## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենա- գրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդ- վածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հա- յաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հե- ղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդ- վածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկա- վարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչնե- րի աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղ- վածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատու- թյունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից:

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործ- ված աղբյուրների համառոտ ցանկը:

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդ- վածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

3

ՄԱՐՏ 1979

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ Մոսկվայի Բաումանյան ընտրական օկրուգի ընտրողների հետ 1979 թվականի մարտի 2-ին ունեցած հանդիպման ժամանակ . . . . . . . . . . . 3

ԱՌԱՋՆՈՐԴՈՂ— Սովետական դեմոկրատիայի փայլուն հաղթանակը . . 14

Հ. Մ. ՈՍԿԱՆՅԱՆ— Կուսակցական աշխատանքի արդյունավետության հե- տագա բարձրացման համար . . . . . . . . 22

ՀՈԴՎԱԾՆԵՐ

Է. Վ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ— ՍՍՀՄ ազգային պետական կառուցվածքի սահմանա- դրական հիմունքները . . . . . . . . 33

Վ. Ա. ՄԻՐՋՈՅԱՆ— «Նոր հասարակության» նեոֆրոյդիստական ծրագրի քննադատությունը . . . . . . . . . . 43

Վ. Գ. ՄԿՐՏՉՅԱՆ— Գիտությունը և մետաֆիզիկան . . . . . 50

Ս. Ա. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ— Բանվոր դասակարգին արժանի համալրում . . 57

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ

Գ. Ս. ՆԱԽՇՔԱՐՅԱՆ— Կադրերին գնահատել ըստ նրանց գործի . . . 62

Վ. Հ. ԴԱՇՅԱՆ— Կոլեկտիվի սոցիալական զարգացումը. փորձ և նկատա- ռումներ . . . . . . . . . . . 69

ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

Ե. Լ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ— Աշխատանքի որակը և արտադրության արդյունավե- տությունը . . . . . . . . . . . 76

Մ. Յ. ՄԿՐՏՉՅԱՆ— Հետևողականորեն արմատավորել խնայողության ռեժիմը 83

ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

ՌԱՖԱՅԵԼ ԱԹԱՅԱՆ— Արժեքավոր աշխատություն Ստ. Շահումյանի մասին 88

Շ. Ռ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— Այժմեական և օգտակար աշխատություն . . 93

## СОДЕРЖАНИЕ


РЕЧЬ ТОВАРИЩА Л. И. БРЕЖНЕВА на встрече с избирателями Бауманского избирательного округа города Москвы 2 марта 1979 года . . . . . . . . 3

ПЕРЕДОВАЯ — Блестящая победа советской демократии . 14

Г. М. ВОСКАНЯН — За дальнейшее повышение эффективности партийной работы . . . . . . 22


### СТАТЬИ


Э. В. ТАДЕВОСЯН — Конституционные основы национально-государственного устройства СССР . . . . 33

В. А. МИРЗОЯН — Критика неофрейдистской программы «нового общества» . . . . . . . 43

В. Г. МКРТЧЯН — Наука и метафизика . . . . . 50

С. А. МИКАЕЛЯН — Рабочему классу—достойное пополнение 57


### ТЕОРИЯ И ПРАКТИКА ПАРТИЙНОГО СТРОИТЕЛЬСТВА


Г. С. НАХШКАРЯН — Кадры оценивать по работе . . 62

В. А. ДАШЯН — Социальное развитие коллектива: опыт и соображения . . . . . . . 69


### ВОПРОСЫ ЭКОНОМИКИ


Е. Л. АБРАМЯН — Качество труда и эффективность производства . . . . . . . . 76

М. Ц. МКРТЧЯН — Последовательно внедрять режим экономии . . . . . . . . 83


### КРИТИКА И БИБЛИОГРАФИЯ


РАФАЕЛ АТАЯН — Ценный труд о Ст. Шаумяне . . 88

Ш. Р. АРУТЮНЯН — Актуальная и полезная книга . . 93




# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ

## Մոսկվայի Բաումանյան ընտրական օկրուգի ընտրողների հետ 1979 թվականի մարտի 2-ին ունեցած հանդիպման ժամանակ

Հարգելի ընկերնե՛ր։

Թանկագին մոսկվացինե՛ր։

Բաումանյան ընտրական օկրուգի ընտրողների հետ ես բնավ էլ առաջին անգամ չեմ հանդիպում։ Եթե ստույգ լինենք, այսօր մեր իններորդ նախընտրական հանդիպումն է։ Եվ ամեն անգամ կամենում եմ ամենից առաջ ձեզ, օկրուգի բոլոր աշխատավորներին ի սրտե շնորհակալություն հայտնել ինձ ցույց տրված պատվի ու վստահության համար՝ ինձ ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատության թեկնածու առաջադրելու համար։

Կկամենայի հատուկ երախտագիտություն հայտնել վստահված անձ Ալեքսանդր Գրիգորևիչ Դեմիդովին, ինչպես նաև այստեղ իմ թեկնածության պաշտպանությամբ հանդես եկած բոլոր ընկերներին։ Խորին շնորհակալություն ագիտատորներին ու վստահված անձանց, որոնք աշխատել են մեր օկրուգի ընտրական տեղամասերում։

Ձեր վստահությունը ես դիտում եմ որպես վստահություն Սովետական Միության կոմունիստական կուսակցության նկատմամբ, որպես վստահություն այն քաղաքական գծի նկատմամբ, որ կուսակցությունն ընդունել է իր XXV համագումարում։

Այդ գիծը նպատակամղված է էկոնոմիկայի զարգացմանը և աշխատավորների կյանքի բարելավմանը, սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործմանը և մեր հայրենիքի բոլոր ազգերի ու ազգությունների եղբայրական բարեկամության ամրապնդմանը, սովետների երկրի պաշտպանական հզորության ամրապնդմանը և կայուն խաղաղության ու միջազգային անվտանգության ապահովմանը։

Հենց այդ քաղաքական գիծը՝ բազմապատկած սովետական մարդկանց անձնվեր աշխատանքով, ընկած է մեր հասարակության հաջողությունների հիմքում։ Հենց այդ քաղաքական գիծն է որոշում նաև ՍՍՀՄ Գերագույն սովետի ամբողջ աշխատանքի բովանդակությունը։

Ես հավանորեն չեմ սխալվի, եթե ասեմ, որ իններորդ գումարման Գերագույն սովետի գործունեության մեջ գլխավոր իրադարձությունը եղավ ՍՍՀՄ նոր Սահմանադրության քննարկումն ու ընդունումը։ Նրանում, ինչպես և միութենական ու ինքնավար հանրապետությունների նոր սահմանադրություններում,

բան կնքենք։ Կարծում եմ, որ դա լիովին կհամապատասխաներ Հելսինկիի ոգուն։

Վերջին տարիներին է՛լ ավելի մոտիկ են դարձել մեր հարաբերությունները գաղութային կամ կիսագաղութային ճնշումից ազատագրված երկրներից շատերի հետ։

Ազգային ազատագրության և սոցիալական առաջընթացի համար ժողովուրդների պայքարի պաշտպանությունը մեր արտաքին քաղաքականության սկզբունքն է, որը վավերագրված է ՍՍՀՄ Սահմանադրության մեջ։ Այն հետևողականորեն կենսագործվում է։ Մենք հպարտանում ենք այն անշահախնդիր օգնությամբ, որը Սովետական Միությունը և սոցիալիստական ընկերակցության մյուս երկրները ցույց տվեցին, օրինակ, Անգոլայի և Եթովպիայի ժողովուրդներին՝ ագրեսիայի դեմ, իրենց ապագան ինքնուրույնաբար որոշելու իրավունքի համար նրանց պայքարում։ Սովետական մարդկանց մեջ համերաշխության և անկեղծ համակրանքի զգացմունքներ են առաջացնում հեղափոխական Աֆղանստանում կատարված առաջադիմական վերափոխությունները։

Մեր ժամանակի կարևոր երևույթն են Անգոլայի, Եթովպիայի, Մոզամբիկի, Աֆղանստանի հետ բարեկամության ու համագործակցության մեր պայմանագրերը։ Դրանք ոչ թե ռազմական դաշինքներ, ոչ թե որևէ մեկի դեմ ուղղված կոալիցիաներ են, այլ հենց այն երկրների հետ բարեկամության ու համագործակցության փաստաթղթեր, ովքեր բռնել են ճնշումից և շահագործումից զերծ հասարակության կառուցման ուղին։

Համաշխարհային քաղաքականության մեջ չկա մի բնագավառ, որտեղ մեր կուսակցությունն ու սովետական պետությունը հանդես չգան արդարության, առաջադիմության և խաղաղության գործի օգտին։ Այդ դիրքերից ենք մենք մոտենում նաև ազատության և դեմոկրատիայի համար մղվող պայքարին՝ թե՛ մեզանից հեռու Նիկարագուայում, թե՛ հարևան Իրանում, այդ դիրքերից ենք մոտենում ռասիստական ճնշումից ազատագրվելու համար Զիմբաբվեի և Նամիբիայի ժողովուրդների պայքարին, Հարավ-Աֆրիկյան Հանրապետությունում ապարտեիդի սիստեմի վերացման պայքարին։ Դրանով է որոշվում նաև մեր վերաբերմունքը Մերձավոր Արևելքի դրության կարգավորման պրոբլեմների նկատմամբ։ Այստեղ, ինչպես և աշխարհի մյուս շրջաններում, մենք չենք որոնում շահադիտական նպատակներ, հավակնություն չունենք մյուս երկրների բնական հարստությունների նկատմամբ։ Մենք հանդես ենք գալիս հանուն կայուն խաղաղության և հաստատ կանգնած ենք արաբական ժողովուրդների օրինական իրավունքների, իսրայելական ագրեսիայի հետևանքները վերացնելու համար նրանց պայքարի կողմը, հանդես ենք գալիս ընդդեմ իմպերիալիստական թելադրանքի, կապիտուլյանտական գործարքների և ընդդեմ արաբների կենսական շահերը վաճառքի հանելու։

Հատկապես պետք է ասել Իրանում տեղի ունեցած ժողովրդական, հակաիմպերիալիստական, ազգային-ազատագրական հեղափոխության մասին։

Մենք, ինչպես և խաղաղության, ժողովուրդների առաջադիմության և անկախության բոլոր անկեղծ կողմնակիցները, ողջունում ենք այդ հեղափոխության հաղթանակը, որ վերջ տվեց բռնակալական, կեղեքիչ վարչակարգին, որը երկիրը դարձրել էր շահագործման օբյեկտ և օտարերկրյա իմպերիալիզմի հենակետ։ Մենք հաջողություններ և բարգավաճում ենք մաղթում նոր, հեղափոխական Իրանին և հուսով ենք, որ Սովետական Միության ու Իրանի ժողովուրդների բարիդրացիական հարաբերությունները նոր պայմաններում բեղմնավոր կերպով կզարգանան փոխադարձ հարգանքի, բարի կամքի և միմյանց ներքին գործերին չմիջամտելու ամուր հիմքի վրա։

Մենք այսուհետ ևս կամրապնդենք բարեկամությունն ու համագործակցությունը ազատագրված երկրների, չմիանալու շարժման մասնակից պետությունների, իրենց ազատության և անկախության համար պայքարող ժողովուրդների հետ։

Ընկերնե՛ր։ Մեր ամբողջ արտաքին քաղաքականությունը մենք վարում ենք և այսուհետև էլ կվարենք եղբայրական սոցիալիստական պետությունների



հետ սերտորեն դաշնակցած, հենվելով Աֆրիկայի, Ասիայի և Լատինական Ամերիկայի անկախ ազատասեր երկրների աջակցության վրա, գործակցելով աշխարհի կապիտալիստական մասի բոլոր խաղաղասեր պետությունների և հասարակական ուժերի հետ։

Մեր նպատակն է կայուն խաղաղությունն ու անվտանգությունը սովետական ժողովրդի համար, կայուն խաղաղությունն ու խաղաղ համագործակցությունը աշխարհի բոլոր պետությունների միջև։ Եվ այդ նպատակին հասնելու համար մենք կպայքարենք անդուլ կերպով, չխնայելով ուժ ու եռանդ։



Ահա, թերևս, այն ամենը, ինչ ես կուզենայի ասել այսօր։

Կուսակցության նախընտրական պլատֆորմը շարադրված է ՍՄԿԿ Կենտկոմի դիմումի մեջ, իմ ընկերների՝ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամների և անդամության թեկնածուների, Կենտկոմի քարտուղարների ճառերում, իմ այսօրվա ելույթում։ Եվ ես ձեզ, բոլոր ընտրողներին կոչ եմ անում քվեարկել կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին։

Ժողովրդի կողմից մեր լենինյան կուսակցության քաղաքական կուրսի միահամուռ, հաստատուն պաշտպանությունը առաջընթացի հուսալի հիմքն է, այն բանի երաշխիքը, որ նախատեսված պլանները կկենսագործվեն։ Դրանք կկենսագործվեն կուսակցության կամքով, սովետական մարդկանց աշխատանքով և հանուն նրանց բարօրության ու երջանկության։

Վերջում թույլ տվեք ձեզ և բոլոր նրանց, ովքեր ինձ առաջադրել են ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատության թեկնածու ու պաշտպանել են այդ թեկնածությունը, հավաստիացնել, որ այդ բարձր, շատ բան պարտավորեցնող վստահությունը ես կաշխատեմ արդարացնել։

(Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառը բազմիցս ընդհատվում էր երկարատև ծափահարություններով: Ժողովի մասնակիցները ճառի եզրափակիչ խոսքերը ընդունեցին բուռն օվացիայով: Դահլիճում կեցցեներ էին հնչում ի պատիվ Սովետական Միության կոմունիստական կուսակցության, նրա լենինյան Կենտկոմի, ի պատիվ կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի):

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ՓԱՅԼՈՒՆ ՀԱՂԹԱՆԱԿԸ

Մ*ԵՐ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԶՈՐ ՀԱՅՐԵՆԻՔԸ, սովետական բազմազգ ժողովուրդը 1979 թվականը թևակոխեցին անցյալ տարում ձեռք բերած փայլուն հասունմներով, ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների համակողմանի նախապատրաստման ու կազմակերպված անցկացման համար ծավալված վիթխարի աշխատանքով։*

*Անցած տարին նշանավոր էր մեր ժողովրդի պատմության համար։ Մեր հանրապետությունը մեծ շուքով նշեց Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակը։ Կոմկուսակցությունն ու սովետական կառավարությունը, բարձր գնահատելով տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում Սովետական Հայաստանի ձեռք բերած նվաճումները և ի նշանավորումն այդ տարելիցի, նրա դրոշին ամրացրին ևս մեկ բարձր պարգև՝ Լենինի երրորդ շքանշանը։*

*Նախընտրական օրերին մեր հանրապետության աշխատավորները նոր ցնծություն ապրեցին. մամուլում հրապարակվեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումը՝ արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման, 1978 թվականի պլանի հաջող կատարման համար ծավալված համամիութենական սոցիալիստական մրցության արդյունքների մասին։ Մի շարք հանրապետությունների թվում սոցիալիստական մրցության հաղթող է ճանաչվել և ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով պարգևատրվել նաև Հայկական ՍՍՀ-ն։ Դա հանրապետության բանվոր դասակարգի ու կոլտնտեսային գյուղացիության, կուսակցական կազմակերպությունների արգասավոր գործունեության արժանի գնահատանքն է։ Եվ, իրոք, մեր հաջողությունները նշանակալի են. Հայաստանի արդյունաբերությունը ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 22-ին, կատարեց տասներորդ հնգամյակի երրորդ տարվա արտադրական ծրագիրը։ Նախորդ տարվա համեմատությամբ ազգային եկամուտն աճեց 278 միլիոն, արդյունաբերության արտադրանքինը՝ 354 միլիոն ռուբլով։ Գյուղատնտեսության արտադրանքը 24 տոկոսով գերազանցեց իններորդ հնգամյակի միջին տարեկան արտադրության մակարդակը։ Ժողովրդական տնտեսության մեջ գործարկվեցին 955 միլիոն ռուբլի ընդհանուր արժողությամբ հիմնական ֆոնդեր։ Կատարվեցին պետությանը գյուղատնտեսական մթերքների վաճառքի առաջադրանքները։*

*Տասներորդ հնգամյակի երրորդ տարվա պետական առաջադրանքների և սոցիալիստական պարտավորությունների հաջող կատարման համար ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով պարգևատրվել են նաև Երևան և Լենինական քաղաքները, Արարատի և Հրազդանի շրջանները։*

*Մեր հանրապետության մարդկանց խորին գոհունակություն է պատճառում այն իրողությունը, որ համամիութենական սոցիալիստական մրցության հաղթողներ են դարձել աշխատավորական երկու տասնյակից ավելի կոլեկտիվներ։ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշներով պարգևատրվել և ՍՍՀՄ ժող-*



*տնտնվաճումների ցուցահանդեսի համամիութենական պատվո տախտակին*
*գրանցվել են Անդրկովկասի երկաթուղու Երևանի բաժանմունքի, Աշխատանքա-*
*յին կարմիր դրոշի շքանշանակիր «Հայէլեկտրալույս» և Աշխատանքային կար-*
*միր դրոշի շքանշանակիր «Մասիս» կոշիկի արտադրամիավորումների, Ղափա-*
*նի «Քաջարանշին» տրեստի, № 2 «Գյուղշին» տրեստի № 29 շրջիկ մեքենա-*
*յացված շարասյան, Հրազդանի «Պատվո նշան» շքանշանակիր պետական շըր-*
*ջանային էլեկտրակայանի, Աշտարակի ճանապարհային նորոգման շինվար-*
*չության, Կիրովականի գեղարվեստական կոմբինատի, Զարենցավանի բեռ-*
*նատար-մարդատար ավտոտրանսպորտային ձեռնարկության, Ախուրյանի*
*շրջանի Հովունի գյուղի կոլտնտեսության, Նոյեմբերյանի շրջանի Աշխատան-*
*քային կարմիր դրոշի շքանշանակիր «Ձեյթուն» սովխոզի կոլեկտիվները։ Հա-*
*մամիութենական փոխանցիկ կարմիր դրոշներ են շահել նաև «Հայտրանսշին»*
*տրեստի, Երևանի կաթի կոմբինատի, կոնյակի արտադրամիավորման, Ալա-*
*վերդու լեռնամետալուրգիական կոմբինատի, Երևանի № 9 տեխնիկական*
*ուսումնարանի, Ղափանի քաղգործկոմի նորոգման-շինարարական վարչու-*
*թյան, ռադիոհեռուստատեսային ապարատների նորոգման ու տեխնիկական*
*սպասարկման «Լազուր» հանրապետական մասնագիտացված միավորման,*
*Կրասնոսելսկի շրջանի Արծվաշենի և Հոկտեմբերյանի շրջանի «Արաքս» սով-*
*խոզների կոլեկտիվները։*

*Այդ բարձր պարգևները քաղաքական ու աշխատանքային մեծ ոգևորու-*
*թյուն առաջացրին ոչ միայն մրցությունում հաղթած, այլև մյուս կոլեկտիվնե-*
*րում և խիզախումների նոր լիցք հաղորդեցին մեր մարդկանց, նրանց համա-*
*կեցին տասներորդ հնգամյակի տնտեսական և սոցիալ-կուլտուրական խնդիր-*
*ները մինչև վերջ լուծելու հաստատ վճռականությամբ։*

*Տասներորդ հնգամյակի չորրորդ տարվա գլխավոր իրադարձությունը մար-*
*տի 4-ին տեղի ունեցած ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրություններն են, որոնք*
*դարձան սովետական ժողովրդի քաղաքական բարձր ակտիվության և գաղա-*
*փարական հասունության, լենինյան կուսակցության շուրջը նրա սերտ համա-*
*խմբվածության իսկական ստուգատես։*

*ՍՍՀ Միության Գերագույն սովետի հերթական ընտրություններն անցան*
*բարձր մակարդակով, ընտրողների աշխատանքային վերելքի պայմաններում*
*և նշանավորեցին կոմունիստների ու անկուսակցականների անխախտ բլոկի*
*մեծ հաղթանակը։ Ընտրողների 99,99 տոկոսը մասնակցեց ընտրություններին։*
*Ընդ որում, Միության սովետի դեպուտատության թեկնածուների օգտին*
*քվեարկեց 99,89 տոկոսը, Ազգությունների սովետի դեպուտատության թեկնա-*
*ծուների օգտին՝ 99,91 տոկոսը։*

*Կոմունիզմ կառուցող սովետական մարդիկ խոր իմաստ ու բովանդակու-*
*թյուն են տեսնում ընտրություններում։ Ահա ինչու նրանք քվեատուփերին մո-*
*տենում էին այն խորին համոզմամբ, որ, ձայն տալով ժողովրդի արժանավոր*
*զավակների օգտին, դրանով իսկ քվեարկում են հանուն սովետական հայրենիքի*
*տնտեսական վերելքի և պաշտպանական հզորության, հանուն իրենց այսօրվա*
*բարգավաճ կյանքի և առավել գեղեցիկ, պայծառ ապագայի, հանուն կոմու-*
*նիստական իդեալների կենսագործման։*

*ՍՍՀՄ Գերագույն սովետի անցած ընտրությունները վճռական նշանակու-*
*թյուն ունեցան մեր երկրի հասարակական-քաղաքական կյանքում և առանձնա-*
*հատուկ են նրանով, որ առաջին անգամ տեղի ունեցան սովետական պետության*
*նոր Հիմնական օրենքի, աշխարհում ամենադեմոկրատական սահմանադրու-*
*թյան ընդունումից ու հաստատումից հետո, նրա գործողության, ՍՄԿԿ XXV*
*համագումարի պատմական որոշումների իրագործման համար ծավալված հա-*
*մաժողովրդական պայքարի պայմաններում։*

*ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունները նշանավորեցին սոցիալիս-*
*տական դեմոկրատիայի փայլուն հաղթանակը, դեմոկրատիա, որն իր օրենս-*
*դրական արտացոլումն է գտել ՍՍՀՄ նոր Սահմանադրության հոդվածներում։*
*Սահմանադրությունը սոցիալիստական դեմոկրատիայի խտացված ար-*
*տահայտությունն է, նրա զարգացման նոր, հասուն սոցիալիզմի փուլի, պետա-*

կան իշխանության ավելի բարձր աստիճանի արտահայտությունը։ Սոցիալիստական դեմոկրատիայի մարմնացումը սովետական ժողովրդապետությունն է՝ իր Հիմնական օրենքով, օրենսդրական ակտերով, իր ներքին ու արտաքին քաղաքականությամբ։ Անցած չորս տասնամյակի պատմությունը հագեցած է մեր երկրի հասարակական, քաղաքական ու տնտեսական կյանքում, մարդկանց հոգևոր աշխարհում կատարված խոր փոփոխություններով ու ձեռք բերված հաջողություններով։ Այդ ժամանակահատվածը սոցիալիստական հասարակարգի վերընթաց զարգացման, հասուն սոցիալիզմի հաստատման փուլն է, որը բնութագրվում է իր մի շարք գլխավոր հատկանիշներով։ Այդ փուլում մեր երկրում կազմավորվեց սոցիալական և ինտերնացիոնալ պատմականորեն նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը, պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը վերաճեց համաժողովրդական սոցիալիստական պետության, բարձրացավ էկոնոմիկայի զարգացման մակարդակը, խորացավ սոցիալիստական սեփականության պետական, համաժողովրդական և կոլտնտեսային-կոոպերատիվ ձևերի մերձեցման, քաղաքի և գյուղի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների աստիճանական վերացման պրոցեսը։ Ընդլայնվեց աշխատավորության մասնակցությունը պետության գործերի կառավարմանը։ Այդ ամենը սովետական պետության սոցիալական հիմքի ամրապնդման, երկրի սոցիալական խմբերի, եղբայրական ազգերի ու ժողովուրդների ամուր և անխախտ դաշինքի, կուսակցության վարած սոցիալ-տնտեսական, ազգային և արտաքին ճիշտ քաղաքականության արգասիք է։ Նշված խոշոր առաջընթացում վճռական դեր են խաղացել տնտեսական, հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում սովետական պետության դեմոկրատական սկզբունքների անշեղ զարգացումն ու կիրառումը։

ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների հաջողությունն առաջընթաց խոշոր քայլ է հասուն սոցիալիզմի զարգացման, կոմունիստական հասարակարգի կառուցման ճանապարհին։ Դրանք մեկ անգամ ևս առանձնակի ցայտունությամբ ցույց տվեցին, թե ինչպես սոցիալիստական դեմոկրատիան ամրապնդվում և խորանում է համակողմանիորեն, ծառայում զարգացած սոցիալիզմի հասունացող պրոբլեմների լուծմանը, սովետական մարդկանց կենսական շահերին։

Սոցիալիզմն ու դեմոկրատիան անխզելի են, փոխկապակցված։ Իսկական դեմոկրատիան սոցիալիստական դեմոկրատիան է, որը սոցիալիզմի անմիջական ծնունդն է, նրա մշտական ուղեկիցը։ Այն Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության գլխավոր արգասիքն է, նրա համաշխարհային պատմական կարևոր նվաճումը։

Սովետական պետության հիմնադիր Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ հաղթական սոցիալիզմն անհնար է, եթե այն չի իրագործում լիակատար դեմոկրատիա։ Լենինյան եզրակացությունն իր հաստատումը գտավ ՍՄԿԿ XXV համագումարի կողմից։ «...ինչպես որ իսկական դեմոկրատիան է անհնար առանց սոցիալիզմի, այնպես էլ սոցիալիզմն է անհնար առանց դեմոկրատիայի մշտական զարգացման» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 128)։

Սովետների ընտրությունները մեզ մոտ կատարվում են ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա՝ գաղտնի քվեարկությամբ։ Տղամարդիկ ու կանայք, բնակչության սոցիալական բոլոր խավերը, բոլոր ազգերի ու ազգությունների ներկայացուցիչները հավասար իրավունքով են մասնակցում ընտրություններին։ Նոր Սահմանադրության հիման վրա ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ կարող է ընտրվել 21 տարեկան դարձած ՍՍՀՄ քաղաքացին։ Դա երիտասարդության նկատմամբ ցուցաբերվող հոգատարության, պետության գործերի կառավարմանը նրա մասնակցությանը վստահելու արտահայտություն է։

Իր էությամբ ու առանձնահատկություններով, իր նպատակներով ու պրակտիկ փորձով ՍՍՀՄ ընտրական սիստեմը արմատապես տարբերվում է կապիտալիստական պետությունների ընտրական սիստեմներից։ Սովետական ընտրական սիստեմն արտահայտում է աշխատավորության բոլոր խավերի՝ բան-



վորների, կոլտնտեսականների և նրանց ծոցից ելած մտավորականության
կենսական շահերը, նրանց համար ապահովում ընտրելու և ընտրվելու լայն
հնարավորություններ։ Բուրժուական դեմոկրատիայի հիման վրա կառուցված
կապիտալիստական երկրների ընտրական սիստեմն արտահայտում է իշխող
դասակարգերի շահերը, նրանց համար ստեղծում ընտրվելու և ընտրություն-
ներին մասնակցելու նպաստավոր պայմաններ։ Զանազան ցենզերի կիրառման
ու սոցիալ-քաղաքական սահմանափակումների պատճառով աշխատավորա-
կան խավերի զգալի մասը, առանձին երկրներում՝ նաև կանայք, զրկված են ոչ
միայն ընտրվելու, այլև ընտրելու իրավունքից։ ԱՄՆ-ում ընտրությունների
նախապատրաստմանն ու անցկացմանն առնչվող բոլոր տեսակի ծախսերը
կատարվում են դեպուտատության թեկնածուների հաշվին։ Այդ պատճառով
դեպուտատներ ընտրվում են ունևոր ընտանիքների անդամները կամ միլիո-
նատերերի ու միլիարդատերերի դրածոները։ Սովետական երկրում, ընդհա-
կառակը, ընտրությունների նախապատրաստման ու անցկացման ծախսերը
կատարում է պետությունը։ Իսկ դա նպաստավոր գործոն է ժողովրդական
դեպուտատների ընտրության գործում։

ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների օրենքի համապատասխան,
մեր երկրում ստեղծվել էր 174.547 ընտրական հանձնաժողով, որոնց կազմում
ընդգրկվել էր 1.661.406 մարդ՝ աշխատավորական կոլեկտիվների և հասա-
րակական կազմակերպությունների լավագույն ներկայացուցիչներ։ Նախորդ
ընտրությունների համեմատությամբ ընտրական հանձնաժողովների կազմն
ավելացել էր 228 հազար մարդով։ Անտարակույս, ընտրությունների դեմոկրա-
տական հիմքերի ամրապնդման իսկական վկայություն էր նաև աշխատավոր-
ների ներկայացուցիչների զգալի ավելացումն այդ հանձնաժողովներում։ Բա-
վական է ասել, որ Միության սովետի և Ազգությունների սովետի ընտրություն-
ների օկրուգային ընտրական հանձնաժողովների անդամների 50 տոկոսը բան-
վորներ և կոլտնտեսականներ էին։ Կանայք կազմում էին նրանց 48 տոկոսը,
մինչև 30 տարեկան երիտասարդները՝ 34, անկուսակցականները՝ 55 տոկոսը։
«Մեր կարգերի դեմոկրատիզմը,— ասված է բոլոր ընտրողներին, Սովե-
տական Միության քաղաքացիներին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումում,—
իրենց գործունեության մեջ ավելի ու ավելի լրիվ են մարմնավորում ժողովր-
դական դեպուտատների սովետները, որոնք կազմում են ՍՍՀՄ քաղաքական
հիմքը»։ Սովետները ժողովրդական պետության անմիջական կրողներն են,
պետական իշխանության ամենաներկայացուցչական մարմինները։ Նրանց
բազմաբովանդակ գործունեությունն ինքնին սոցիալիստական դեմոկրատիան
է գործողության մեջ։ ՍՍՀՄ նոր Սահմանադրությունում վավերագրված ժողո-
վրդական դեպուտատների սովետներ անվանումը արտացոլում է այդ մար-
մինների դեմոկրատական բնույթն ու էությունը։ Դրա համար հիմք դարձավ մեր
երկրի բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության ու մտավորա-
կանության, բոլոր ազգերի ու ազգությունների կամքն ու շահերն արտահայտող
համաժողովրդական պետության ձևավորումը։

Ժողովրդական դեպուտատների սովետներն անմիջականորեն և իրենց կող-
մից ստեղծված մարմինների միջոցով վերահսկողություն են իրականացնում
ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում, ղեկավարում պետա-
կան, տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարության բոլոր ճյուղերը։
Նրանք լուծում են ամենատարբեր խնդիրներ, որոնք կենսականորեն անհրա-
ժեշտ են իրենց ենթակա տարածքում գործող պետական հիմնարկությունների
ու ձեռնարկությունների, պետական և կոլեկտիվ տնտեսությունների, բնակչու-
թյան լայն խավերի համար։

Ժողովրդական դեպուտատների սովետները բոլոր հարցերը քննարկում ու
լուծում են կոլեկտիվ, ազատ և գործարար կերպով, ապահովում դրանց հրա-
պարակայնությունը, կազմակերպում գործադիր ու կարգադրիչ և սովետների
կողմից ստեղծված մյուս մարմինների կանոնավոր հաշվետվությունը սովետ-
ների և բնակչության առջև, քաղաքացիներին ակտիվորեն ներգրավում դրանց

Գյուղատնտեսության բնագավառի աշխատողների ծավալած պայքարի
արդյունքը 1978 թվականին 235 միլիոն տոննա հացահատիկի հավաքումն էր,
մի ցուցանիշ, որն աննախադեպ էր մեր երկրի պատմության մեջ։ Նրանք հա-
ջողությամբ կենսագործում են ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշում-
ները՝ գյուղատնտեսության հետագա արագ վերելքն ապահովելու համար։

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախորդ ընտրություններից հետո առաջընթաց
խոշոր քայլեր են արվել ժողովրդի կենսամակարդակի աճի, գիտության և կուլ-
տուրայի, կրթության և առողջապահության զարգացման ասպարեզում։ Իրա-
կանացվել են բանվորների և ծառայողների աշխատավարձի, կոլտնտեսական-
ների աշխատանքի վարձատրության, կենսաթոշակների բարձրացման միջո-
ցառումներ, 54 միլիոն մարդ ապահովվել է նոր բնակարաններով։ Անվիճելի
են հաջողությունները տիեզերքի ուսումնասիրության ու նվաճման գործում։

ՍՍՀՄ տնտեսական և պաշտպանական հզորության, կոմկուսակցության
և սովետական կառավարության վարած արտաքին ճիշտ քաղաքականության
շնորհիվ նշանակալիորեն աճել է մեր պետության միջազգային հեղինակու-
թյունը։ ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած խաղաղության ծրագրին համա-
պատասխան՝ Սովետական Միությունը հսկայական ջանքեր է գործադրել լար-
վածության թուլացման, սպառազինությունների մրցավազքի դադարեցման ու
զինաթափման պրոբլեմների լուծման, սոցիալական տարբեր կարգ ունեցող
երկրների միջև խաղաղ գոյակցության սկզբունքների հետևողական կիրառման
համար։ Այդ ամենի շնորհիվ օր-օրի մեծանում է մեր սոցիալիստական պե-
տության ձգողական ուժը. աստիճանաբար ավելի շատ երկրներ են ցանկա-
նում մասնակցել նրա երթին, ուժեղանում է ազգային-ազատագրական պայ-
քարի թափը։ Անտարակույս, ՍՍՀՄ նոր, տասներորդ գումարման Գերագույն
սովետը, նրա նախագահությունը խոշոր, կոնստրուկտիվ քայլեր կանեն խա-
ղաղության ամրապնդման նպատակով։

Այժմ, երբ ավարտվել են ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունները և
սոցիալիստական դեմոկրատիան տարել է փայլուն հաղթանակ, սովետները,
որպես դեմոկրատիան կրող ու իրականացնող պետական իշխանության մար-
միններ, բարդ և պատասխանատու խնդիրներ ունեն լուծելու։ Տասներորդ հինգ-
ամյակն իր հաջող երթն է շարունակում, և սովետները պետք է լինեն այդ երթը
գլխավորողների առաջին շարքերում։ Կասկած չի հարուցում, որ նոր՝ տասնե-
րորդ գումարման Գերագույն սովետը և նրա հանձնաժողովները բազմաբեղուն
գործունեություն կծավալեն՝ սովետական պետության արտաքին քաղաքակա-
նության արդյունավետ վարման, սոցիալիստական օրինականության ամրա-
պնդման վերաբերյալ, երկրին ու ժողովրդին անհրաժեշտ և հույժ կենսական
պրոբլեմներ արծարծող օրենքներ ընդունելու համար։

Այժմ ավելի, քան երբեք, հսկայական անելիքներ ունեն նաև տեղական
սովետները։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, ՍՍՀՄ Գերագույն
սովետի ընդունած օրենքների հիման վրա ընդլայնվել են «գյուղական ու ավա-
նային, շրջանային ու քաղաքային սովետների իրավունքները և նյութական
հնարավորությունները», հետևաբար, բարձրացել է նրանց դերը համագումարի
առաջադրած տնտեսական և սոցիալ-կուլտուրական խնդիրների լուծման գոր-
ծում։ Սովետների պարտքն է՝ ավելի մոտիկից զբաղվել տնտեսական շինա-
րարության հարցերով, ամրապնդել պետական ու պլանային կարգապահու-
թյունը, բարձրացնել իրենց ենթակայության տարածքում գործող ձեռնարկու-
թյունների ու հիմնարկությունների ղեկավարության պատասխանատվությու-
նը, մեծ հետևողականություն հանդես բերել սովետական օրենքների ճիշտ
կիրառման, վերադաս սովետական մարմինների դիրեկտիվների իրականաց-
ման գործում։ Պլանը օրենք է, իսկ օրենքի կատարման հսկողությունը դրված է
սովետների վրա։

Կուսակցության XXV համագումարի որոշումների հիման վրա մեր երկրում
տասներորդ հնգամյակում և մոտակա ապագայում, բնակչության կենսամա-
կարդակի բարձրացման նպատակով իրականացվելու են սոցիալ-կուլտուրա-
կան մի շարք կարևոր միջոցառումներ։ Այս ասպարեզում հսկայական անե-



լիքներ ունեն նաև սովետները և ժողովրդական դեպուտատները։ «Պետք է ուղ-
ղակի ասել,— նշել է Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում,— որ ընտրող-
ների պատվիրանների հիման վրա դեպուտատների արած առաջարկություն-
ներն արտացոլում են մեր ժողովրդի պահանջմունքներն ու կարիքները, մեր
ամբողջ կյանքը»։

Սովետների գործունեության հաջողությունն աշխատանքի գիտական
կազմակերպման, ղեկավարման լենինյան ոճի արմատավորման մեջ է։ Եվ
նրանք պետք է լենինյան ոճի սկզբունքները հետևողականորեն կիրառեն իրենց
աշխատանքի պրակտիկայում։

Այսօր, երբ սովետական մարդիկ ապրում են ՍՍՀՄ Գերագույն սովետի
ընտրությունների ժամանակ կոմունիստների ու անկուսակցականների ան-
խախտ բլոկի, սոցիալիստական դեմոկրատիայի տարած փայլուն հաղթանակի
տպավորության տակ, սովետական մարդկանց նպատակները և ձգտումները
հանգում են մեր երկրի առջև ծառացած տնտեսական և սոցիալ-կուլտուրական
բարդ և պատվավոր խնդիրների անվերապահ լուծմանը, խնդիրներ, որոնք
կանխորոշել է ՍՄԿԿ XXV համագումարը ընթացիկ՝ տասներորդ հնգամյակի
և մոտակա ապագայի համար։

Մեր հանրապետության աշխատավորական կոլեկտիվները, ոգևորված
ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան և նոյեմբերյան պլենումների որոշումներով, ՍՍՀՄ
Գերագույն սովետի ընտրությունների արդյունքներով՝ պատրաստակամություն
են հայտնում բազմապատկելու իրենց ողջ եռանդն ու ստեղծագործական
ուժերը՝ 1979 թվականը աշխատանքային մեծագործություններով նշանավո-
րելու համար։ Ոգեշունչ աշխատանքի հավաստման ցայտուն վկայությունը
պետական պլանները գերազանցող սոցիալիստական պարտավորություններն
են և հանդիպական պլանները։ Վերջերս հանրապետության կուսակցական, սո-
վետական, արհմիութենական և կոմերիտական ակտիվի ժողովը հաստատեց
1979 թվականի սոցիալիստական պարտավորությունները։ Նախատեսվում է
ժամկետից շուտ կատարել արդյունաբերական արտադրանքի թողարկման և
իրացման, կապիտալ շինարարության պլանները, երկրին պլանից դուրս տալ
40 միլիոն ռուբլու արդյունաբերական արտադրանք, մեծացնել գյուղատնտե-
սական արտադրանքի արտադրության ծավալը, խոշոր միջոցառումներ իրա-
կանացնել տրանսպորտի և կապի, գիտության, կուլտուրայի, կրթության և
առողջապահության բնագավառներում։

Սովետական Հայաստանի աշխատավորները ՍՄԿԿ Կենտկոմին, Կենտկո-
մի քաղբյուրոյին, ընկեր Լ. Ի. Բրեժնևին հավաստիացնում են, որ «ամեն ինչ
կանեն կուսակցության XXV համագումարի մշակած տնտեսական և սոցիալա-
կան զարգացման ծրագրի, ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի նոյեմբերյան
պլենումի որոշումների հաջող կենսագործման համար, կապահովեն 1979
թվականի և ամբողջությամբ վերցրած տասներորդ հնգամյակի պլանային առա-
ջադրանքների և սոցիալիստական պարտավորությունների կատարումն ու գե-
րակատարումը»։

Հանրապետության կուսակցական կազմակերպությունների պարտքն է՝
ըստ ամենայնի խթանել ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների կամպա-
նիայի ընթացքում աշխատավորներին համակած խանդավառությունը, է՛լ ավե-
լի բարձրացնել նրանց քաղաքական ակտիվությունը, ապահովել հետագա
առաջընթացը տնտեսական ու կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում։

---

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

**Հ. Մ. ՈՍԿԱՆՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի քարտուղար

ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ կուսակցական կազմակերպություններում ավարտվեց հերթական հաշվետու-ընտրական կամպանիան: Հաշվետվություններ ու ընտրություններ անցկացվեցին կուսակցական խմբերում, սկզբնական, շրջանային ու քաղաքային բոլոր կուսակցական կազմակերպություններում:

Ավարտված հաշվետու-ընտրական կամպանիան առանձնահատուկ նշանակություն ուներ: Այն անցկացվեց ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կենսագործման այնպիսի վճռական փուլում, երբ հանրապետության աշխատավորները, հաջողությամբ նվաճելով հնգամյակի երեք տարվա բնագծերը, կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ նպատակային և հետևողական աշխատանք են տանում ամբողջությամբ վերցրած տասներորդ հնգամյակի սոցիալ-տնտեսական խնդիրները լիովին կենսագործելու համար:

Հաշվետու ժամանակաշրջանը հարուստ էր քաղաքական խոշորագույն իրադարձություններով: Ընդունվեցին ՍՍՀՄ, Հայկական ՍՍՀ և միութենական մյուս հանրապետությունների նոր սահմանադրությունները, սովետական ժողովուրդը հանդիսավորությամբ տոնեց Հոկտեմբերյան հեղափոխության 60-րդ տարեդարձը: Մեծ շուքով, քաղաքական և աշխատանքային վիթխարի վերելքի պայմաններում հայ ժողովուրդը նշեց նաև իր համար քախտորոշ մեկ այլ իրադարձության՝ Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակը:

Եվ միանգամայն օրինաչափ է, որ այդ ամենը, իրոք, կանխորոշեցին հաշվետու-ընտրական ժողովների և կոնֆերանսների ուղղությունն ու բովանդակությունը: Հաշվետվություններն ու ընտրություններն ընթացան գաղափարական-քաղաքական և կազմակերպական բարձր մակարդակով: Ժողովներում և կոնֆերանսներում կոմունիստները միահամուռ հավանություն տվեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան և նոյեմբերյան պլենումների որոշումներին, ընկ. Լ. Ի. Բրեժնևի ելույթներում առաջադրված դրույթներին և արված հետևություններին: Այդ կարևորագույն քաղաքական կամպանիայի ողջ ընթացքը մեկ անգամ ևս համոզիչ կերպով ցույց տվեց, որ հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները ջերմորեն պաշտպանում և միահամուռ հավանություն են տալիս կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականությանը:

Հաշվետու-ընտրական ժողովներում ու կոնֆերանսներում վառ կերպով դրսևորվեցին կուսկազմակերպությունների բարձր մարտունակությունը, կոմունիստների աճած ակտիվությունն ու կազմակերպվածությունը: Սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներին մասնակցել են կոմունիստների 97,4 տոկոսը, մտքերի փոխանակությանը՝ մասնակիցների մոտ 30 տոկոսը: Քաղաքային ու շրջանային կուսակցական կոնֆերանսներին մասնակցել է ընտրված պատգամավորների 98,1 տոկոսը:

Ամենուր հաշվետվություններն ու ընտրություններն անցան ՍՄԿԿ XXV



համագումարի որոշումների կատարման գործում կուսակցական կոմիտեների,
սկզբնական կուսկազմակերպությունների պատասխանատվության հետագա
բարձրացման նշանաբանով: Ընտրովի ղեկավար մարմինների աշխատանքը
հաշվետու ժամանակաշրջանում քննարկվեց այդ իսկ տեսանկյունով, առաջա-
դրված խնդիրների պրակտիկ լուծման չափանիշով:
Հաշվետու զեկուցումներում, կոմունիստների ելույթներում կարմիր թելի
պես անցնում էր այն միտքը, որ վերջին տարիներին ՀԿԿ Կենտկոմի ձեռնարկած
միջոցները, վարվող հաստատակամ կուրսը դրական են ներգործել Հայկական
ՍՍՀ էկոնոմիկայի վիճակի բարելավման վրա: Հանրապետությունը հաջողու-
թյամբ է կատարել տասներորդ հնգամյակի երեք տարվա առաջադրանքները:
Ազգային եկամտի աճը, հնգամյա պլանով նախատեսված 19,5 տոկոսի փոխա-
րեն, կազմել է 22,9 տոկոս, իսկ արդյունաբերական արտադրության ծավալը,
23,2 տոկոսի փոխարեն, մեծացել է 25,7 տոկոսով: Հնգամյակի անցած երեք
տարիների արտադրության ծավալի առաջադրանքը կատարվել է նաև գյուղա-
տնտեսության բնագավառում:
Ձեռք բերված բարձր նվաճումների համար հանրապետությունը հնգամյա-
կի անցած բոլոր տարիներին հաղթող է ճանաչվել համամիութենական սոցիա-
լիստական մրցությունում և արժանացել ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների
խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին:
Հանրապետության աշխատավորական կոլեկտիվների համար բեղմնավոր
էր 1978 թվականը: Արդյունաբերությունը ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 22-ին,
սոցիալիստական պարտավորություններով նախատեսվածից չորս օր շուտ,
կատարեց արտադրանքի իրացման ծավալի և կարևորագույն արտադրատե-
սակների մեծ մասի թողարկման տարեկան պլանը: Արտադրության աճը կազ-
մեց 7,7 տոկոս, պլանով նախատեսված 7,1 տոկոսի փոխարեն: Լրացուցիչ թո-
ղարկվեց 96,7 միլիոն ռուբլու և իրացվեց 86,1 միլիոն ռուբլու արտադրանք՝
սոցիալիստական պարտավորություններով նախատեսված համապատասխա-
նաբար 60 և 50 միլիոն ռուբլու փոխարեն: Զգալի աշխատանք է կատարվել ար-
տադրանքի տեխնիկական մակարդակի բարձրացման, որակի բարելավման ասպարեզում: Այժմ հանրապետությունում շուրջ 1.800 արտադրատեսակ կամ ամ-
բողջ արտադրանքի ծավալի 13,5 տոկոսը թողարկվում է պետական որականի-
շով: Ավելի քան 80 հազար բանվորներ, 1.800 բրիգադներ, 980 տեղամասերի,
արտադրամասերի, հերթափոխերի, 80 ձեռնարկությունների և կազմակերպու-
թյունների կոլեկտիվներ հնգամյակի երեք տարիների առաջադրանքների կա-
տարման մասին զեկուցեցին ՍՍՀՄ Սահմանադրության ընդունման առաջին
տարեդարձի նախօրյակին:
Ձնայած բնակլիմայական անբարենպաստ պայմաններին, հաջողությամբ
եզրափակեցին տարին նաև հանրապետության գյուղի աշխատավորները: Գե-
րակատարվեցին շաքարի ճակնդեղի, բանջարեղենի, խաղողի արտադրության
և վաճառքի, ինչպես նաև կարտոֆիլի, մսի, կաթի, բրդի պետական գնումների
պլանային առաջադրանքները:
Որոշակի տեղաշարժեր են կատարվել նաև կապիտալ շինարարության և
ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում:
Ամենուրեք հաշվետու զեկուցումներում և կոմունիստների ելույթներում
առանձնապես շեշտվում էր ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության,
անձամբ ընկեր Լ. Ի. Բրեժնևի անգնահատելի օգնությունն ու հոգատարությունը
մեր հանրապետության էկոնոմիկայի և մշակույթի զարգացման, աշխատա-
վորների բարեկեցության հետագա բարձրացման նկատմամբ:

ԺՈՂՈՎՆԵՐՈՒՄ ԵՎ ԿՈՆՖԵՐԱՆՍՆԵՐՈՒՄ կոմունիստները նշեցին, որ ձեռք
բերված հաջողությունները օրինական հպարտության զգացումով են համա-
կում բոլորին: Սակայն դրանք չեն կարող և չպետք է քողարկեն այն նեղ տեղե-
րը, եղած թերություններն ու վրիպումները, որոնք շարունակում են տեղ գտնել
տնտեսական շինարարության տարբեր ոլորտներում: Հաշվետու-ընտրական
ժողովների ու կոնֆերանսների մասնակիցները ո՛չ միայն վեր հանեցին էկո-
նոմիկայի կուսակցական ղեկավարման գործում եղած թերությունները, այլև

նշեցին դրանց պատճառները, հաղթահարման կոնկրետ ուղիները, ինչպես և հետագա անելիքները։

Առանձնահատուկ ուշադրություն է նվիրվել այնպիսի մի կարևորագույն խնդրի լուծմանը, ինչպիսին է աշխատանքն առանց ետ մնացող ձեռնարկությունների։ Եվ դա միանգամայն օրինաչափ է։ Չնայած վերջին ժամանակներս այդ ասպարեզում կատարված որոշակի դրական տեղաշարժերին, այնուամենայնիվ, ետ մնացող ձեռնարկությունների թիվը հանրապետությունում դեռևս մեծ է։ 1978 թվականին 520 արտադրական միավորումներից ու ձեռնարկություններից 36-ը չեն կատարել արդյունաբերական արտադրության ծավալի տարեկան պլանը, իսկ 35-ը՝ արտադրանքի իրացմանը. այսպիսով, պակաս է թողարկվել 15,5 միլիոն ռուբլու և չի իրացվել 17,5 միլիոն ռուբլու արտադրանք։

Երևանի, Լենինականի, Կիրովականի քաղաքային, Ղափանի, Հրազդանի և մի շարք այլ շրջանային կուսակցական կոնֆերանսներում կոմունիստները, խոսելով «առանց ետ մնացողների աշխատելու» ռոստովցիների նախաձեռնության տարածման ասպարեզում կուտակված փորձի մասին, միաժամանակ նշեցին, որ դեռևս չի հաջողվել ապահովել պլանների համաչափ կատարումը ըստ ամիսների ու եռամսյակների, որ շատ ձեռնարկություններում շարունակվում է գրոհայնության արատավոր պրակտիկան։

Հաշվետու-ընտրական կամպանիայի ժամանակ լուրջ խոսակցություն է ծավալվել նաև արտադրության արդյունավետության բարձրացման շատ կարևորագույն ցուցանիշի՝ աշխատանքի արտադրողականության անշեղ աճի ապահովման շուրջը։ Մասնավորապես նշվել է, որ աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա բացասաբար են անդրադառնում բանվորական աշխատաժամանակի դեռևս զգալի կորուստները, սարքավորումների և մեխանիզմների պարապուրդները, աշխատանքային ցածր կարգապահությունը, արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների, առաջավոր փորձի անբավարար ներդրումն ու արմատավորումը։

Ժողովների և կոնֆերանսների մասնակիցներին լրջորեն մտահոգել են հումքի և նյութերի խնայողաբար օգտագործման, արտադրանքի որակի բարելավման հարցերը։ Մասնավորապես նշվել է, որ այդ բնագավառներում ձեռք բերված ընդհանուր հաջողությունների հետ մեկտեղ շատ ձեռնարկություններում դեռևս արմատական տեղաշարժեր չեն կատարվում, հոգ չի տարվում խնայողության ռեժիմի արմատավորման, արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման մասին։ Այդ պատճառով էլ շատ ձեռնարկություններում չեն թողարկվում պետական որականիշով արտադրատեսակներ։ Այսպես, չնայած Երևան քաղաքում վերջին երեք տարում պետական որականիշով արտադրանքի քանակն աճել է ավելի քան չորս անգամ, սակայն այդպիսի արտադրանք է թողարկում մայրաքաղաքի ձեռնարկությունների միայն 45 տոկոսը։

Հաշվետու-ընտրական ժողովներում և կոնֆերանսներում նշվեց, որ բարձր արտադրողական աշխատանքի վրա բացասաբար են անդրադառնում նաև առանձին տեղերում սոցիալիստական մրցության կազմակերպման գործում եղած թերությունները, մրցության բարոյական և նյութական խթանների անտեսումը։ Ահա թե ինչ ասվեց այդ կապակցությամբ Չարենցավանի դարբնոցային գործարանի սկզբնական կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում. «Բարձր նվաճումներ ձեռք բերելու գործում անչափ մեծ օգուտ կարող է տալ սոցիալիստական մրցության կազմակերպման նկատմամբ առավել ուշադիր վերաբերմունքը։ Մինչդեռ այդ գործում դեռևս շատ է ձևականությունը։ Ժամանակին չեն ամփոփվում մրցության արդյունքները, չեն ապահովվում մրցության հրապարակայնությունը, արդյունքների համեմատելիությունը, որի պատճառով էլ ոչ միշտ է հնարավոր տեսնել յուրաքանչյուր աշխատողի կոնկ-



րետ ներդրումը ընդհանուր գործի մեջ։ Իսկ դա հաճախ թևաթափ է անում
մարդկանց, նվազեցնում նրանց աշխատանքային ակտիվությունը»։
Գյուղական սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում և շըր-
ջանային կուսկազմակերպությունների կոնֆերանսներում առանցքային հար-
ցերը եղել են ներկա փուլում կուսակցության ագրարային քաղաքականության
կենսագործման, ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1978 թ.) պլենումի որոշումների
լույսի ներքո կատարված աշխատանքի խոր վերլուծությունը և գյուղատնտե-
սական արտադրության արդյունավետության հետագա բարձրացման միջոցա-
ռումների մշակումը։
Ընդհանրացնելով գյուղատնտեսական արտադրության արդյունավետու-
թյան բարձրացման, նրա մասնագիտացման և համակենտրոնացման, հողա-
գործության և անասնապահության վարման կուլտուրայի բարձրացման նպա-
տակով կատարված աշխատանքը, կոմունիստները միաժամանակ սկզբունքա-
յին քննադատության և ինքնաքննադատության մթնոլորտում վեր հանեցին
եղած թերություններն ու բացթողումները։ Ղուկասյանի, Վարդենիսի, Էջ-
միածնի, Ապարանի, Մարտունու, Իջևանի և մի շարք այլ շրջանների կուսժո-
ղովներում և կոնֆերանսներում նշվեց, որ գյուղատնտեսության ասպարեզում
աշխատանքի արդյունքներն ավելի մեծ կլինեին, եթե բոլոր տնտեսություններն
աշխատեին բարձր արտադրողականությամբ, բերքատվության և մթերատվու-
թյան բարձրացման համար մղվող պայքարում ակտիվորեն ներգրավեին յուրա-
քանչյուր տեղամաս, յուրաքանչյուր ֆերմա, բրիգադ և օղակ, եթե առա-
վելագույնս օգտագործվեին բոլոր ռեզերվներն ու հնարավորությունները։ Արա-
րատի շրջանային կուսակցական կազմակերպության կոնֆերանսում, օրինակ,
նշվեց, որ չնայած շրջանը 1978 թ. գերակատարեց խաղողի վաճառքի պլանը,
սակայն խաղողագործությամբ զբաղվող 18 տնտեսություններից 11-ը չկատա-
րեցին սահմանված առաջադրանքները։
Հաշվետու զեկուցումներում, կոմունիստների ելույթներում քննադատվե-
ցին տնտեսությունների այն ղեկավարները, որոնք պլանների ձախողումը կամ
ցածր ցուցանիշները պատճառաբանում են զուտ բնակլիմայական անբարե-
նպաստ պայմաններով։ Թե ինչպիսի հաջողությունների կարելի է հասնել, երբ
վարպետությունը, հողի նկատմամբ տնտեսվար, սրտացավ մոտեցումը միա-
ձուլվում են գիտության նվաճումների, բարձր ագրոտեխնիկայի կիրառման հետ՝
թեկուզ և դժվարին բնակլիմայական պայմաններում, այդ մասին կոնկրետ
օրինակ բերվեց Ապարանի շրջանային կոնֆերանսում։ Եթե 1978 թ. Ծաղկաշենի
տնտեսությունում հացահատիկի ցանքատարածության յուրաքանչյուր հեկտա-
րից ստացվել է 21,4 ցենտներ, Թթուջրում՝ 18,9, Հարթավանում՝ 17,3 ցենտներ
բերք, ապա միևնույն բնակլիմայական պայմաններում գտնվող Արագածի,
Վարդենիսի, Ափնայի տնտեսություններում հեկտարից հավաքվել էր ընդամենը
5,3—8,4 ցենտներ։ Նման մի այլ օրինակ նշվեց Մարտունու շրջանային կոնֆե-
րանսում. Զորագյուղի սովխոզում յուրաքանչյուր կովից ստացվում է 1900 կգ
կաթ, իսկ հարևան Արծվանիստի, Մարտունու, Աստղաձորի, Գեղհովտի, Վերին
Գետաշենի տնտեսություններում՝ 1.250—1.300 կգ։
Շատ ժողովներում և կոնֆերանսներում կոմունիստները նշեցին պլանային
կարգապահության հետագա ամրապնդման, կադրերի պատասխանատվության
բարձրացման, առաջավոր տնտեսությունների փորձի ընդհանրացման և տա-
րածման, գյուղատնտեսության բնագավառում ևս առանց ետ մնացողների նշա-
նաբանով մրցություն ծավալելու անհրաժեշտությունը։
Սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում, շրջանային կոն-
ֆերանսներում սրությամբ խոսվեց կադրերի, մասնավորապես միջին օղակի
աշխատողների ամրապնդման, նրանց որակավորման բարձրացման կարևորու-
թյան մասին։
Հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում համակողմանիորեն քըն-
նարկվեցին նաև կապիտալ շինարարության վիճակի և այն բարելավելու հետ
առնչվող հարցերը։ Ընդգծվել է այն միտքը, որ կապիտալ շինարարությունը
դեռևս մնում է մեր ժողովրդական տնտեսության նեղ տեղերից մեկը։ Առաջ-

վա նման դանդաղ են շինարարության տեմպերը, չեն կատարվում կապիտալ ներդրումների և արտադրական նոր կարողությունների ու հիմնական ֆոնդերի գործարկման պլանները, իսպառ չեն վերացել կապիտալ միջոցների փոշիացման ու սառեցման փաստերը և այլն։

Աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման վերաբերյալ ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների իրականացման գործում կարևոր դեր է պատկանում սպասարկման ոլորտին։ Ժողովներում և կոնֆերանսներում կոմունիստները, նշելով այդ բնագավառում ձեռք բերված որոշակի հաջողությունները, միաժամանակ լուրջ մտահոգություն հայտնեցին այն կապակցությամբ, որ բնակչության սպասարկմամբ զբաղվող կազմակերպությունների գործունեության մեջ դեռևս կան լուրջ թերություններ. արդյունավետ պայքար չի մղվում սովետական առևտրի կանոնների խախտումների, պատվերների կատարման ժամկետների ձգձգման, գնորդների և պատվիրատուների նկատմամբ կոպտության ու ոչ-հարգալից վերաբերմունքի և նման այլ բացասական երևույթների դեմ։

Երևանի, Լենինականի, Կիրովականի սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում, քաղաքային կոնֆերանսներում հատկապես նշվեց մարդատար տրանսպորտի անբավարար աշխատանքը։ Երևանի քաղաքային կոնֆերանսում, խոսելով այդ մասին, «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման ապարատավար Ռ. Ղալումյանն ասաց. «Մեզ այսօր բնավ չի գոհացնում քաղաքային տրանսպորտի վիճակը։ Նոր սիստեմը, իհարկե, լավ է, բայց այն վատ է կիրառվում։ Դեռևս ցածր է սպասարկման կուլտուրան, մեքենաները երթուղի են դուրս գալիս անսարք վիճակում, շատ վարորդներ բարեխղճորեն չեն կատարում իրենց պարտականությունները, նրանց չի մտահոգում այն կոլեկտիվի պատիվը, որտեղ նրանք աշխատում են»։

Կոմունիստները կոնկրետ խնդիրներ են շոշափել սպասարկման ոլորտի կազմակերպությունների աշխատանքը բարելավելու համար՝ նշելով անօրինականությունների և բացասական մյուս երևույթների դեմ պայքարի հետագա ուժեղացման, այդ պայքարում աշխատավորական լայն զանգվածներին ներգրավելու, բանվորական վերահսկողության արդյունավետությունը բարձրացնելու անհրաժեշտությունը։

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ առաջադրած տնտեսական և սոցիալ-քաղաքական խնդիրների հաջող լուծումը մեծ չափով պայմանավորված է գաղափարական-դաստիարակչական աշխատանքի հետագա կատարելագործմամբ, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի, աշխատավորների տնտեսագիտական կրթության, պրոպագանդիստական և ագիտացիոն-մասսայական ամբողջ աշխատանքի արդյունավետությամբ։ Այդ իսկ նկատառումով էլ նշված հարցերը խորությամբ քննարկվեցին հաշվետու-ընտրական ժողովներում և կոնֆերանսներում։ Ինչպես հաշվետու զեկուցումներում, այնպես էլ կոմունիստների ելույթներում նշվել է, որ վերջին ժամանակներս բավականին բարելավվել է աշխատավորների շրջանում տարվող գաղափարական-քաղաքական աշխատանքը, որ այն դառնում է ավելի նպատակային ու արդյունավետ, ակնհայտորեն ուժեղանում է այդ գործում կոմպլեքսային մոտեցման միտումը։ Ամենուր շեշտվում էին ընկեր Լ. Ի. Բրեժնևի «Մալայա զեմլյա», «Վերածնունդ» և «Խոպան» հուշագրությունների հսկայական ազդեցությունն ու մեծ նշանակությունը մասսաների կոմունիստական աշխարհայացքի ձևավորման, նրանց շրջանում կազմակերպական և քաղաքական աշխատանքի հետագա կատարելագործման համար։

Ժողովների և կոնֆերանսների մասնակիցները միաժամանակ վեր հանեցին գաղափարական-քաղաքական աշխատանքում տեղ գտած թերություններն ու բացերը։ Երևանի, Լենինականի, Կամոյի, Մարտունու, Գորիսի, Հոկտեմբերյանի և մի շարք այլ քաղաքների ու շրջանների սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում, ինչպես նաև քաղաքային ու շրջանային կոնֆերանսներում կոնկրետ փաստեր բերվեցին այն մասին, որ առանձին տեղերում դեռևս չեն հաղթահարվել ձևականությունն ու մակերեսայնությունը գաղափա-



րադաստիարակչական աշխատանքում, որի հետևանքով այն հաճախ էական ներգործություն չի թողնում մարդկանց գիտակցության և վարքագծի վրա։ Նշվեց նաև, որ դեռևս ցածր է տնտեսագիտական ուսուցման արդյունավետությունը, որ այդ ուսուցումը շատ հաճախ չի շաղկապվում տնտեսական պրոբլեմների ու խնդիրների լուծման հետ։

Կուսակցական կոնֆերանսներում կոնկրետ խնդիր դրվեց գաղափարական հիմնարկությունների, պրոպագանդիստական կադրերի, բոլոր կուսակցական կազմակերպությունների առջև՝ կապված ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների նախապատրաստության և անցկացման հետ։ Խոսքը մասնավորապես այն մասին էր, որ անհրաժեշտ է առավել վառ կերպով ցուցադրել սոցիալիստական ապրելակերպի, մեր դեմոկրատիայի առավելությունները, վճռական հակահարված տալ բուրժուական գաղափարախոսության զրպարտիչ բարբաջանքներին, ուժեղացնել աշխատավորների հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակությունը։

Կուսակցական կազմակերպությունների ժողովներում, շրջանային ու քաղաքային կոնֆերանսներում կոնկրետ միջոցառումներ են մշակվել գաղափարական-դաստիարակչական աշխատանքի արդյունավետության հետագա բարձրացման, դրանց ոճի ու մեթոդների կատարելագործման նպատակով։

ԿՅԱՆՔԸ ՑՈՒՅՑ Է ՏԱԼԻՍ, որ տնտեսական-քաղաքական խնդիրների լուծման, աշխատավորական կոլեկտիվների գործերի վրա կուսակցական կազմակերպությունների ներգործության ուժը մեծ չափով պայմանավորված է նրանց մարտունակությամբ ու նախաձեռնությամբ, կազմակերպական-կուսակցական աշխատանքի բարձր մակարդակով։ Եվ միանգամայն բնական է, որ այդ աշխատանքների ներկա վիճակի և հետագա բարելավման հարցերը կենտրոնական տեղ են գրավել հաշվետու զեկուցումներում, կոմունիստների ելույթներում։ Մասնավորապես նշվել է, որ հաշվետու ժամանակաշրջանում նկատելիորեն աճել և ամրապնդվել են սկզբնական կուսկազմակերպությունները, առավել խոր և բովանդակալից է դարձել նրանց գործունեությունը, ուժեղացել է կոլեկտիվների կյանքի բոլոր կողմերի վրա նրանց ներազդեցությունը։

«Մեր հաջողությունների հիմքը,— նշվեց Երևանի էլեկտրալամպերի գործարանի կուսակցական կազմակերպության կոնֆերանսում,— արտադրամասային կուսկազմակերպությունների և կուսակցական խմբերի հստակ, նպատակասլաց աշխատանքն է, արտադրության վճռական տեղամասերում կոմունիստների ուժերի ճիշտ տեղաբաշխումը, նրանց ավանգարդային դերի ապահովումը, կոմունիստներին ներկայացվող պահանջների բարձրացումը, կուսակցական և պետական կարգապահության ըստ ամենայնի ամրապնդումը»։

Կոնֆերանսների և ժողովների մասնակիցները սրտացավությամբ էին խոսում նաև կազմակերպական-կուսակցական աշխատանքում տեղ գտած մի շարք թերությունների մասին։ Մասնավորապես շեշտվեց սկզբնական, արտադրամասային կուսկազմակերպությունները կազմակերպչորեն ամրապնդելու, նրանց հեղինակության հետագա աճի անհրաժեշտությունը։ Նշվեց, որ առանձին սկզբնական կուսակցական կազմակերպություններ դեռևս բավականաչափ մարտունակ չեն, հանդես չեն գալիս որպես մասսաների հմուտ կազմակերպիչներ, ակտիվորեն չեն ներգործում աշխատավորական կոլեկտիվների գործերի վիճակի վրա, իսկ համապատասխան քաղկոմներն ու շրջկոմներն անհրաժեշտ հետևողականություն և հաստատակամություն չեն ցուցաբերում, գործնական օգնություն ու ղեկավարություն չեն իրականացնում սկզբնական կազմակերպությունների նկատմամբ։

Վերջին տարիներին կուսակցական կոմիտեների, սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքում առանձնահատուկ կարևորություն է տրվում որոշումների կատարման ստուգման և վերահսկողության կատարելագործմանը։ Կրասնոսելսկի շրջանային կոնֆերանսում նշվեց, որ հաշվետու ժամանակաշրջանում շրջանի ձեռք բերած հաջողությունները շատ բանով պայմանավորված են որոշումների կատարման կազմակերպման և վերահսկողության գործի բարելավմամբ։ Մասնավորապես շեշտվեց, որ ոչ վաղ անցյալում շրջա-

ծել տնտեսավարման և կառավարման մեթոդները, ամրապնդել կազմակերպ-
վածությունն ու կարգապահությունն արտադրության բոլոր տեղամասերում։
Մեր օրերում հսկայական նշանակություն է ստանում այն ամենի ռացիո-
նալ օգտագործումը, ինչ որ ունի մեր էկոնոմիկան, ժողովրդական տնտեսու-
թյունը։ Ահա թե ինչու անտնտեսվարության, կորուստների և շռայլումների դեմ
պայքարը պետք է դառնա աշխատավորական բոլոր կոլեկտիվների, կուսակ-
ցական, սովետական, տնտեսական և հասարակական կազմակերպությունների
պրակտիկ գործունեության գլխավոր ուղղություններից մեկը։ Կարևոր է, որ-
պեսզի խնայողության ռեժիմը, որպես սոցիալիստական տնտեսավարման
գլխավոր սկզբունքներից մեկը, հետևողականորեն կենսագործվի ամեն մի ճյու-
ղում, ամեն մի արտադրական կոլեկտիվում, յուրաքանչյուր բանվորական
տեղում։

Հանրապետության առջև ծառացած լուրջ ու պատասխանատու խնդիր-
ները հաջողությամբ լուծելու համար անհրաժեշտ է նոր թափ հաղորդել մաս-
սաների շրջանում ծավալված սոցիալիստական մրցությանը։ Այն պետք է նպա-
տակամղել արտադրության բոլոր ռեզերվների և հնարավորությունների ի հայտ
բերմանն ու օգտագործմանը։

Աշխատավորական կոլեկտիվների նախաձեռնությամբ ծնված ամեն մի
նորը պետք է արագ և լայն տարածում գտնի, ակտիվորեն նպաստի առաջավոր-
ների մակարդակին բոլոր կոլեկտիվների բարձրացմանը։ Մրցության ուժն ու
արդյունավետությունն ամենից առաջ այն է, որ բոլորն էլ աշխատեն բարձր
արտադրողականությամբ, հաջողությամբ կատարեն արտադրական առաջա-
դրանքները, սոցիալիստական պարտավորությունները՝ ինչպես քանակական,
այնպես և որակական ցուցանիշներով։ Բոլոր կազմակերպությունների համա-
տեղ ջանքերը պետք է նպատակամղել յուրաքանչյուր աշխատավորական կո-
լեկտիվում արդյունավետ, համերաշխ աշխատանքի այնպիսի մթնոլորտի
ստեղծմանը, որտեղ կոլեկտիվի ամեն մի անդամ կարողանա լիովին դրսևորել
իր կարողություններն ու ունակությունները, բարձր պատասխանատվություն
զգա ինչպես իր, այնպես և կոլեկտիվի աշխատանքի արդյունքների համար։

Պետք է մշտապես կատարելագործել կուսակցական կազմակերպություն-
ների կողմից տարվող կազմակերպական և քաղաքական-մասսայական աշ-
խատանքի ձևերն ու մեթոդները՝ դրանց տալով առավել կոնկրետություն և
գործնականություն։ Հարկավոր է որակական նոր աստիճանի բարձրացնել
կադրերի ընտրության, տեղաբաշխման, նրանց դաստիարակության նպատա-
կով տարվող աշխատանքը, նրանց առաջադրվող պահանջները, անձնական
պատասխանատվությունը հանձնարարված գործի համար, ըստ ամենայնի
ամրապնդել կուսակցական, պետական և պլանային կարգապահությունը։

Կազմակերպական և գաղափարական-քաղաքական բարձր մակարդակը,
որի պայմաններում անցավ հանրապետության կուսակցական կազմակերպու-
թյունների հաշվետու-ընտրական կամպանիան, կոմունիստների աճած ակտի-
վությունը, ծառացած պրոբլեմների գործարար քննարկումը հաստատ համոզ-
մունք են ներշնչում, որ հանրապետության կուսակցական կազմակերպություն-
ները ունակ են և պատրաստ հետևողականորեն ու անթերի լուծելու ինչպես 1979
թվականի, այնպես էլ ամբողջությամբ վերցրած տասներորդ հնգամյակի սո-
ցիալ-տնտեսական խնդիրները։ Այդ ազնիվ պայքարում նրանց կոգևորի, նրանց
եռանդին նոր լիցք կհաղորդի ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի,
ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը, որին արժանացան
Հայաստանի աշխատավորները 1978 թվականին ծավալված համամիութենա-
կան սոցիալիստական մրցությունում հաղթելու համար։

---



# ՍՍՀՄ ԱԶԳԱՅԻՆ ՊԵՏԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԻ ՍԱՀՄԱՆԱԴՐԱԿԱՆ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԸ

**Է. Վ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ**
փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԱԶԱՏ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ անխախտ դաշինք...
ՍՍՀՄ Պետական հիմնի այս բառերի մեջ արտացոլված
է սովետական բազմազգ պետության իսկական դեմոկրատական և ինտերնա-
ցիոնալիստական էությունը։ «Սովետական Սոցիալիստական Հանրապետու-
թյունների Միությունը,— ասված է ՍՍՀՄ Սահմանադրության 70-րդ հոդվա-
ծում,— միասնական միութենական բազմազգ պետություն է՝ կազմավորված
սոցիալիստական ֆեդերալիզմի սկզբունքի հիման վրա՝ ազգերի ազատ ինքնո-
րոշման և իրավահավասար սովետական սոցիալիստական հանրապետություն-
ների կամավոր միավորման շնորհիվ»։ Համաժողովրդական սոցիալիստական
պետությունն արտահայտում է երկրի բանվորների, գյուղացիների և մտավո-
րականության, բոլոր ազգերի և ազգությունների աշխատավորների կամքն ու
շահերը։

Լինելով սովետական պետության ողջ վաթսունամյա զարգացման խտաց-
ված հանրագումարը, ՍՍՀՄ նոր Սահմանադրությունն արտացոլել է նաև զար-
գացած սոցիալիզմի այնպիսի մեծագույն նվաճումները, ինչպիսիք են ազգա-
յին հարցի լրիվ ու վերջնական լուծումը մեր երկրում, սովետական ազգերի և
ազգությունների ամենասերտ միասնությունը, համակողմանի բարգավաճումն
ու անշեղ մերձեցումը, պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի
կազմավորումը։ Դրա հետ միասին, նրանում արտացոլված են նաև սովետա-
կան բազմազգ պետության զարգացման հիմնական օրինաչափություններն ու
միտումներն արդի փուլում։ Սահմանադրության երրորդ բաժինը վավերագրում
է ՍՍՀՄ ազգային պետական կառուցվածքի սահմանադրական հիմունքները
զարգացած սոցիալիզմի պայմաններում։

ՍՍՀՄ-ը միասնական և միաժամանակ կառուցվածքային տեսակետից
բարդ միութենական, ֆեդերատիվ բազմազգ պետություն է, որն ընդգրկում է
15 միութենական և 20 ինքնավար հանրապետություններ, 8 ինքնավար մար-
զեր ու 10 ինքնավար օկրուգներ։

ՍՍՀ Միության մեջ մարմնավորված են ամբողջ սովետական ժողովրդի
միութենական պետականությունը, նրա պետական միասնությունը, միութե-
նական և ինքնավար հանրապետություններում, ինքնավար մարզերում և օկ-
րուգներում՝ սովետական ազգերի և ազգությունների ազգային պետականու-
թյունը։ Ազգային պետականության համապատասխան ձևեր ունեցող ազգու-
թյունների բնակչությունը կազմում է երկրի ողջ բնակչության 98 տոկոսը։ Այս
ամենը պերճախոս վկայում է, որ սոցիալիզմը ո՛չ միայն հռչակում է ազգերի
ինքնորոշման իրավունքը, այլև ապահովում է նրա ռեալ իրականացումը, իրենց
ազգային պետականության ստեղծումը ժողովուրդների կողմից։

Պատմական փորձը ցույց է տվել, որ ՍՍՀՄ ֆեդերատիվ կառուցվածքի
հիմնական գծերը լրիվ արդարացրել են իրենց։ Ուստի ՍՍՀՄ Սահմանադրու-
թյունը սկզբունքային փոփոխություններ չի մտցնում սովետական սոցիալիս-

կառավարման մարմինների ակտիվ գործունեության համար: Նոր Սահմանադրությունը հաստատում է, որ ժողովրդական տնտեսության ճյուղերը, միութենական ենթակայության միավորումներն ու ձեռնարկությունները ՍՍՀ Միության մարմինները ղեկավարում են անմիջականորեն և լրիվ ծավալով, իսկ միութենական-հանրապետական ենթակայության ճյուղերի նկատմամբ իրականացնում են միայն ընդհանուր ղեկավարություն: Ճիշտ այդպես էլ, ապահովելով օրենսդրական կարգավորման միասնությունը երկրի ամբողջ տերիտորիայում, ՍՍՀ Միության մարմիններն իրենց իրավասությունը սահմանափակում են միայն ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների օրենսդրության հիմունքներ սահմանելով: ՍՍՀՄ Սահմանադրության մեջ, ինչպես արդեն նշվեց վերևում, խոսքը վերաբերում է ՍՍՀ Միության կողմից պետական իշխանության և կառավարման հանրապետական ու տեղական մարմինների կազմակերպման և գործունեության ընդհանուր հիմունքների սահմանմանը, գիտատեխնիկական առաջընթացի հիմնական ուղղությունների և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործմանն ու պահպանման ընդհանուր միջոցառումներին և այլն, որը ո՛չ միայն չի բացառում, այլև ուղղակի ենթադրում է հանրապետական օրենքների կամ այլ ակտերի հրատարակումը, համապատասխան միջոցառումների ինքնուրույն կիրառումը միութենական հանրապետությունների իրավասության շրջանակներում:

Այդ ամենը պերճախոս վկայում է, որ ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ հետևողականորեն մարմնավորվել և ստեղծագործաբար զարգացվել են դեմոկրատական ցենտրալիզմի և սոցիալիստական ֆեդերալիզմի լենինյան սկզբունքները: Վ. Ի. Լենինը գրում էր, որ «միասնությունը հիմնականում, արմատականում, էականում չի խախտվում, այլ ապահովվում է մանրամասնությունների բազմազանությամբ, տեղական առանձնահատկություններով, գործի մոտեցման պրիոմներով, վերահսկողությունն իրականացնելու եղանակներով...» (Երկեր, հ. 26, էջ 503):

Սովետական բազմազգ պետության ֆունկցիաների զարգացման և գործունեության ծավալի ընդլայնման հետ զուգընթաց, տեղի է ունենում կենտրոնացման ուժեղացման երկմիասնական պրոցես՝ ընդհանուր միութենական, ինտերնացիոնալ նշանակություն ունեցող հարցերում և միաժամանակ հանրապետությունների իրավունքների՝ կյանքի կողմից թելադրվող ընդլայնում՝ ինչպես իրենց տերիտորիայում ընդհանուր միութենական խնդիրների իրականացման, այնպես էլ ավելի մասնավոր, օպերատիվ, տեղական և յուրահատուկ ազգային պրոբլեմների լուծման գործում: Սոցիալիզմի պայմաններում դա ազգային պետական շինարարության մեջ դեմոկրատական ցենտրալիզմի և սոցիալիստական ֆեդերալիզմի սկզբունքների իրականացման, ամրապնդման ու զարգացման միասնական պրոցեսի երկու կողմերն են, քանի որ ցենտրալիզմը և դեմոկրատիան միասնական են ու անբաժանելի:

Հանրապետությունների իրավունքների գիտականորեն հիմնավորված ընդլայնումը, որը համապատասխանում է ինչպես ամբողջ բազմազգ պետության, այնպես էլ առանձին հանրապետությունների շահերին ու հնարավորություններին, հանգեցնում է ոչ թե դեմոկրատական ցենտրալիզմի և ՍՍՀ Միության ինտերնացիոնալ միասնության թուլացմանը, այլ նրա ամրապնդմանը, իսկ դա, իր հերթին, որպես երաշխիք է ծառայում յուրաքանչյուր միութենական հանրապետության սուվերենության ամրապնդման, նրա ակտիվության, նախաձեռնության և ինքնուրույնության զարգացման համար:

Սովետական բազմազգ պետության պայմաններում պետության ընդհանուր միութենական հիմունքների ամրապնդումը տեղի է ունենում ոչ թե ազգային հանրապետությունների սուվերեն իրավունքների սահմանափակման, այլ այդ իրավունքների ընդլայնման ու ամրապնդման, դրանց երաշխիքների ուժեղացման հետ անխզելի կապի ու ներդաշնակ զուգակցման միջոցով:

Միութենական հանրապետությունը, ասված է ՍՍՀՄ Սահմանադրության մեջ, սուվերեն սովետական սոցիալիստական պետություն է, որը մյուս սովետական հանրապետությունների հետ միավորվել է Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ: ՍՍՀ Միության տնօրինության



սահմաններից դուրս միութենական հանրապետությունը ինքնուրույն կերպով է իրականացնում պետական իշխանությունն իր տերիտորիայում: Այն ունի իր Սահմանադրությունը, որը համապատասխանում է ՍՍՀՄ Սահմանադրությանը և հաշվի է առնում հանրապետության առանձնահատկությունները (հոդվ. 76), ունի պետական իշխանության և կառավարման իր բարձրագույն մարմինները՝ միութենական հանրապետության Գերագույն սովետ ու նրա նախագահություն, միութենական հանրապետության Մինիստրների խորհուրդ, այսինքն՝ միութենական հանրապետության կառավարություն (հոդվ. հոդվ. 137—138): Միութենական հանրապետության տերիտորիան չի կարող փոփոխվել առանց նրա համաձայնության: Միութենական հանրապետությունների միջև սահմանները կարող են փոփոխվել համապատասխան հանրապետությունների փոխադարձ համաձայնությամբ, որը ենթակա է ՍՍՀ Միության հաստատմանը (հոդվ. 78): Միութենական հանրապետությունը, որ ինքնուրույն կերպով որոշում է իր երկրամասային, մարզային, օկրուգային, շրջանային բաժանումը և լուծում վարչատերիտորիալ կառուցվածքի այլ հարցեր (հոդվ. 79), իրավունք ունի հարաբերությունների մեջ մտնելու օտարերկրյա պետությունների հետ, նրանց հետ կնքելու պայմանագրեր և փոխանակելու դիվանագիտական ու հյուպատոսական ներկայացուցիչներ, մասնակցելու միջազգային կազմակերպությունների գործունեությանը: Յուրաքանչյուր միութենական հանրապետության իրավունք է վերապահվում ազատորեն դուրս գալու ՍՍՀՄ-ից:

Միութենական հանրապետությունների՝ որպես ՍՍՀ Միության սուբյեկտների սուվերենությունը միութենական սովետական ֆեդերացիան էականորեն տարբերում է սովետական ֆեդերացիայի մեկ այլ ձևից՝ ՌՍՖՍՀ-ից, որի կազմի մեջ են սովետական այնպիսի ազգային հանրապետություններ, ինչպիսիք են ԻՍՍՀ-ները, որոնք պետական իշխանությունն իրականացնում են միայն ինքնավարության հիմունքներով: ՍՍՀՄ-ում ներդաշնակորեն զուգակցվում են ՍՍՀ Միության սուվերենությունը և նրա մեջ մտնող միութենական հանրապետությունների սուվերենությունը, որը պայմանավորվում է ամենից առաջ ամբողջ սովետական հասարակության, քաղաքական սիստեմի միասնությամբ, ՍՍՀՄ ժողովուրդների հիմնական շահերի համընկնումով:

Միութենական պետականության և ազգային պետականության ներդաշնակ միասնությունը սովետական բազմազգ պետությունում արտացոլվում է այն բանում, որ միութենական պետականության ստեղծումն ու ամրապնդումը եղել ու մնում են հանրապետությունների ազգային պետականության հաջող զարգացման և համակողմանի կատարելագործման կարևորագույն պայմանն ու ամենագլխավոր երաշխիքը: Բոլոր միութենական հանրապետությունները ՍՍՀ Միության միասնության ու հզորության ամրապնդման մեջ են տեսնում իրենց բարգավաճման և սուվերենության ամրապնդման գլխավոր աղբյուրը: Միութենական հանրապետությունների սուվերեն իրավունքները պահպանվում են ՍՍՀ Միության կողմից, ասված է ՍՍՀՄ Սահմանադրության 81-րդ հոդվածում: Ազգային սովետական պետականությունն իր հերթին ծառայում է որպես սովետական ժողովրդի սոցիալական և ինտերնացիոնալ միասնության ամրապնդման, նրա միութենական պետականության ամրապնդման ու սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման կարևոր գործոն: Միութենական հանրապետությունը, ՍՍՀՄ Սահմանադրության համաձայն (հոդվ. 77), նպաստում է իր տերիտորիայում ՍՍՀ Միության լիազորությունների իրականացմանը, կենսագործում է ՍՍՀՄ պետական իշխանության և կառավարման բարձրագույն մարմինների որոշումները:

ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը ո՛չ միայն պահպանում և ապահովում է միութենական հանրապետությունների սուվերեն իրավունքները, այլև ընդլայնում է դրանք և առավել ամրապնդում դրանց երաշխիքները: Դա ամենից առաջ արտահայտվել է այն բանում, որ միութենական հանրապետություններին՝ ի դեմս նրանց պետական իշխանության բարձրագույն մարմինների, վերապահված է օրենսդրական նախաձեռնության իրավունք ՍՍՀՄ Գերագույն սովետում (հոդվ. 113): Կարևոր նշանակություն ունի միութենական հանրապետությունների այնպիսի նոր սահմանադրական իրավունքի վավերագրումը ՍՍՀՄ Հիմ-

փորեն առաջնահերթ էին Հոկտեմբերից անմիջապես հետո և սոցիալիզմի կա-
ռուցման պրոցեսում, սովետական ֆեդերացիան և սովետական ազգային պե-
տականությունը չեն դադարել անհրաժեշտ լինել սովետական բազմազգ պե-
տության հետագա զարգացման համար: Եթե սոցիալիստական շինարարու-
թյան փուլում դրանք ծառայել են որպես ազգային հարցի սոցիալիստական
լուծման կարևորագույն քաղաքական ձևերից մեկը, ապա արդի պայմաննե-
րում, երբ ազգային հարցը ՍՍՀՄ-ում լուծվել է և իրականացվում է կոմունիզ-
մի շինարարությունը, սովետական ֆեդերացիան և սովետական ինքնավարու-
թյունը, ինչպես կանխատեսում էր Վ. Ի. Լենինը, հանդես են գալիս որպես սո-
վետական ազգերի հետագա բարգավաճման ու մերձեցման և նրանց լիակատար
միասնության հասնելու կարևոր պետական ձևեր:
ՍՄԿԿ XXIV և XXV համագումարները նորից մատնանշեցին ՍՍՀ Միության
ընդհանուր շահերը և այդ միությունը կազմող հանրապետություններից յու-
րաքանչյուրի շահերը մշտապես հաշվի առնելու և ներդաշնակորեն զուգակցելու
հիման վրա սովետական բազմազգ պետությունն այսուհետ ևս ամրապնդելու
անհրաժեշտությունը:
Հիմնովին սխալ է առանձին հեղինակների այն դիրքորոշումը, որոնք խո-
սում են միութենական և ինքնավար հանրապետությունների «ապազգայնաց-
ման», իրենց ազգային պետականության ձևի նկատմամբ ազգերի հետաքրքրու-
թյունը «կորչելու և գոլորշիանալու», սովետական ազգային պետականության
զարգացումը «աստիճանաբար մարելու հունով» ընթանալու մասին և այլն: Չի
կարելի հիմնավորված համարել նաև երբեմն հանդիպող այն պնդումները, թե
ազգային պետականությունը կմահանա ավելի շուտ, քան պետականությունն
ընդհանրապես:
ՍՍՀՄ-ում ազգային հարաբերությունների արդի փուլի էության և սովե-
տական ազգային-պետական ձևերի զարգացման հեռանկարների նկատմամբ
սխալ հայացքներն արտացոլվեցին նաև ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախա-
գծի քննարկման ժամանակ: Որոշ ընկերներ, առաջարկելով ՍՍՀՄ Սահմանա-
դրության մեջ մտցնել միասնական սովետական ազգի հասկացությունը, միա-
ժամանակ առաջարկում էին վերացնել միութենական և ինքնավար հանրապե-
տությունները կամ խիստ սահմանափակել միութենական հանրապետություն-
ների սուվերենությունը՝ նրանց զրկելով ՍՍՀՄ-ից դուրս գալու, արտաքին հա-
րաբերություններ ունենալու իրավունքից: Նույն ուղղությամբ էին ընթանում
նաև Ազգությունների սովետը վերացնելու և ՍՍՀՄ միապալատ Գերագույն սո-
վետ ստեղծելու վերաբերյալ առաջարկությունները: ՍՍՀՄ Գերագույն սովետի
VII նստաշրջանում տված զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն այդ կապակցությամբ
ասաց. «Կարծում եմ, որ այդ առաջարկությունների սխալականությունն ակն-
հայտ է: Սովետական ժողովրդի սոցիալ-քաղաքական միասնությունն ամե-
նևին չի նշանակում ազգային տարբերությունների անհետացում: Լենինյան ազ-
գային քաղաքականության հետևողական կիրառման շնորհիվ մենք, կառուցե-
լով սոցիալիզմ, միաժամանակ,— պատմության մեջ առաջին անգամ,— հա-
ջողությամբ լուծեցինք ազգային հարցը: Անխախտ է սովետական ժողովուրդ-
ների բարեկամությունը, կոմունիստական շինարարության պրոցեսում անշե-
ղորեն տեղի է ունենում նրանց մերձեցում, նրանց հոգևոր կյանքի փոխադարձ
հարստացում: Բայց մենք վտանգավոր ուղու վրա կկանգնեինք, եթե սկսեինք
արհեստականորեն արագացնել ազգերի մերձեցման այդ օբյեկտիվ պրոցեսը:
Դրանից հաստատակամորեն նախազգուշացնում էր Վ. Ի. Լենինը, և նրա պատ-
գամներից մենք չենք նահանջի» (Լ. Ի. Բրեժնև, ՍՍՀՄ Սահմանադրության մա-
սին, էջ 48—49):
ՍՍՀՄ Սահմանադրությունը մի իսկական հիմն է միասնական սովետական
միութենական բազմազգ պետությանը, սովետական ֆեդերացիայի և ինքնա-
վարության, սոցիալիստական դեմոկրատիայի լենինյան սկզբունքների իսկա-
կան հաղթանակն է, ՍՄԿԿ ազգային քաղաքականության հաղթանակը: Այն
ապրում է, գործում, աշխատում՝ ի բարօրություն ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների,
նրանց բարեկամության ու եղբայրության, հօգուտ կոմունիզմի:

# «ՆՈՐ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ» ՆԵՈՖՐՈՅԴԻՍՏԱԿԱՆ ԾՐԱԳՐԻ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ

Վ. Ա. ՄԻՐԶՈՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

ՄԱՐԴԿԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿՐԹՈՒԹՅԱՆ սոցիալական և գի-
տատեխնիկական զարգացման արդի պրոբլեմներն
ստանում են տրամագծորեն հակադիր մեկնաբանություն, դառնում մարքսիս-
տական և բուրժուական գաղափարախոսությունների անհաշտ պայքարի ա-
պարեզ: Այդ պայքարի արդի փուլի առանձնահատկություններից մեկը բուր-
ժուական գաղափարախոսների կողմից կոմունիստական իդեալների խեղա-
թյուրումն է, կապիտալիզմի ջատագովումը առերևույթ քննադատության տես-
քով, հնարովի սոցիալիզմի «մոդելների» հակադրումը ռեալ սոցիալիզմին:
Բուրժուական-ռևիզիոնիստական գաղափարների դեմ տարվող պայքարի
արդյունավետության երաշխիքը փաստարկումների գիտական հիմնավորվա-
ծությունն է: Պատահական չէ, որ ՍՄԿԿ XXV համագումարը խնդիր դրեց «բարձ-
րացնել հասարակական գիտությունների դերը հակակոմունիզմի դեմ մղվող
հարձակողական պայքարում, բուրժուական և ռևիզիոնիստական տեսություն-
ների քննադատության, մարքսիզմ-լենինիզմի գաղափարների կենծարարների
մերկացման բնագավառում» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 316):

ԱՐԴԻ ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԾԱՎԱԼՈՒՄՆ ավելի ցայտուն
է դրսևորում կապիտալիստական հասարակարգի արմատական անհամապա-
տասխանությունը արտադրության նոր պահանջներին, ավելի է խորացնում
կապիտալիզմին ներհատուկ հակասությունները: Այս պայմաններում բուր-
ժուական հասարակական միտքը նոր լուծումների իր որոնումներում անխու-
սափելիորեն անդրադառնում է ապագա հասարակության կառուցվածքի կան-
խագծումներին: Ինչպես վկայում է Կալիֆորնիայի համալսարանի պրոֆեսոր
Ռալֆ Պարկմանը, թե քանի որ ներկայիս սոցիոտեխնիկական պրոբլեմների
լուծումները հեշտորեն չեն գտնվում, ապա մեր ջանքերն անխուսափելիորեն
արծարծում են ապագայի պրոբլեմները:
«Նոր հասարակության», «Նոր քաղաքակրթության», «Նոր մարդու» ծրա-
գրեր են առաջադրում տարբեր փիլիսոփայական հոսանքների ներկայացուցիչ-
ներ: Հատկապես տեխնոլոգիական լավատեսության ջատագովները շարունա-
կում են հույսերը լիովին կապել գիտատեխնիկական առաջընթացի, «կիբեռ-
նետիկական հասարակության» հետ, պնդում, թե տեխնիկան ի վերջո կլուծի
սոցիալական բոլոր պրոբլեմները: Էկզիստենցիալիստները, պերսոնալիստնե-
րը, նեոֆրոյդիստները, ընդհակառակն, տեխնիկայի զարգացման մեջ տեսնում
են մարդկային արժույթների կործանման սպառնալիք: Որոշ գիտնականներ էլ
(ավստրալիացի փիլիսոփա Ջոն Պասմորը, ամերիկյան սոցիոլոգներ Վիկտոր
Ֆերկիսը և Իմանուիլ Մեսթինը, բելգիացի փիլիսոփա Անրի Մոտը և այլոք),
փորձում են խուսափել ծայրահեղ լավատեսությունից և հոռետեսությունից,

դրույթը մարդկային անհատի հասարակական տեղի վերաիմաստավորման վերաբերյալ ունի որոշակի տեխնոլոգիական հիմք, թեև Ֆրոմն ինքը դա հիմնավորում է բարոյախոսական առումով:

Արդ «նոր հասարակության», մարդկանց և ոչ թե իրերի շուրջը կենտրոնացած հասարակության, մարդուն իբրև նպատակ, այլ ոչ իբրև միջոց դիտող հասարակության կառուցումը պահանջում է նախ ստեղծել առողջ մարդիկ, փոխել մարդու բնությունը և ապա վերջինիս առողջ, «բնական» պահանջմունքներին համապատասխանեցնել հասարակությունը: Հատկապես մարդու խառնվածքում խոր հոգեբանական փոփոխություններն է Ֆրոմը ներկայացնում իբրև «տնտեսական և էկոլոգիական աղետի երկընտրանք»: Սակայն միաժամանակ պարզվում է (և այստեղ արտահայտվում է հեղինակի կողմից լիովին չյուրացրած «ճշմարիտ» մարքսիզմը), որ մարդու բնույթում փոփոխությունները «հնարավոր են լոկ այն չափով, որ չափով տեղի են ունենում արմատական տնտեսական և սոցիալական փոփոխություններ», որոնք էլ, ի վերջո, մարդուն «փոփոխման հնարավորություն» են ընձեռում:

Այստեղ Ֆրոմը, անկասկած, մի քայլ առաջ է գնում հոգեսոցիալական դուալիզմից ազատվելու գործում, որը հասարակությունը և անհատը դիտում է իբրև իրարից անկախ, ինքնուրույն զարգացող զուգահեռ շարքեր: Դրանով նա ազատվում է օրթոդոքսալ ֆրոյդիզմի նատուրալիզմից՝ նպաստելով նեոֆրոյդիզմի հետագա սոցիալացմանը: Սակայն, այդքանով հանդերձ, Ֆրոմը դեռ հեռու է այն բանի լրիվ ըմբռնումից, որ հատկապես մարդկանց ակտիվ, պրակտիկ-վերափոխիչ գործունեությունն է թե՛ մարդու և թե հասարակության փոփոխման աղբյուրը: Մարքսը և Էնգելսը հատկապես շեշտում էին, որ նոր մարդիկ և նրանց նոր ապրելակերպը արդյունք են նրանց հեղափոխական գործունեության, և, այդ առումով, ինքն իրեն փոփոխելը համընկնում է պարագաների վերափոխման հետ: Մինչդեռ հասարակության վերափոխման Ֆրոմյան ծրագրում մարդը դատապարտված է պասսիվության:

Ֆրոմը հավատ չի ընծայում պրոլետարիատի հեղափոխական ակտիվությանը, գտնելով, որ այն լիովին հարմարվել է բուրժուական հասարակությանը: Նա սխալ է համարում Մարքսի այն դրույթը, որ բանվորները ոչինչ չունեն կորցնելու, բացի իրենց շղթաներից, պնդելով թե բանվորները մասնակցում են կապիտալիստական հասարակության տնտեսական առաջընթացին, օգտվում են դրանից, ուստի «ավելին ունեն կորցնելու, քան իրենց շղթաները»: Այստեղ Ֆրոմն ակնհայտորեն գռեհկացնում է մարքսյան հայտնի դրույթը պրոլետարիատի հեղափոխական դերի մասին, բացի այդ նա բանվորական արիստոկրատիայի, մանրբուրժուական պատրանքներով մոլորված բանվորների փոքրաթիվ խմբի իրոք համաձայնողական վարքագիծը տարածում է ողջ բանվոր դասակարգի վրա: Զարգացած կապիտալիստական երկրներում գործադուլային պայքարի թափը, դասակարգային բախումների բոլոր՝ թե՛ տնտեսական, թե՛ քաղաքական և թե գաղափարախոսական ձևերի սրումը հերքում են բանվոր դասակարգի ապահեղափոխականացման վերաբերյալ դրույթը:

Ո՞ւմ է, ի վերջո, հասցեագրված «նոր հասարակության» ծրագիրը, ո՞վ պետք է այն կենսագործի: Ո՞վ է ի վիճակի արտադրությունը կողմնորոշելու դեպի «բանական սպառումը» և այդ նպատակով «վճռականորեն սանձահարելու» արտադրությունը բացառապես իրենց շահին ծառայեցնելու սեփականատերերի ձգտումը: Այս և նման հարցերը Ֆրոմը փաստորեն անպատասխան է թողնում: Համարյա զավեշտական է հնչում Ֆրոմի կոչը՝ հիմնադրել «սպառողների մարտական շարժում», որպես զենք կիրառել «սպառողների գործադուլների» սպառնալիքը և այլն: Եթե նույնիսկ Ֆրոմը իրավացի է, որ «ունենալու կենսաձևից ազատումը հնարավոր է միմիայն արտադրական և քաղաքական ներկայացուցչական դեմոկրատիայի լիակատար իրականացմամբ», ապա ո՞վ, սոցիալական ի՞նչ ուժեր են երաշխավորելու նման դեմոկրատիան: Ո՞վ է ապահովելու բյուրոկրատական մենեջմենտի փոխարինումը հումանիստականով, ապահովելու երաշխավորված եկամտի սկզբունքի կիրառումը, արգելելու պրոպագանդայի «ուղեղ լվացող» մեթոդների գործածությունը, ազատելու գիտական հետազոտությունները շահույթի և ռազմական նպատակների իմպերատիվներից...



Ընդհանուր առմամբ, Է. Ֆրոմի ծրագրում թերևս կան հետաքրքրություն ներկայացնող իդեաներ, սակայն կապիտալիստական իրականության պայմաններում նրա բոլոր էական առաջարկները, հրապուրիչ նախագծերը զուրկ են պոտենցիալ իրագործողից. դրանում է հենց բուրժուական ռեֆորմատորների անզորությունը, բուրժուական հումանիզմի ուտոպիզմը:

Հոգեվերլուծական կանխադրույթներից արտածելով նոր հասարակության բարոյական նորմատիվները, Էրիխ Ֆրոմն այնուհետև փորձում է դրանց տալ տնտեսական հիմնավորում: Սակայն, ընդհանուր առմամբ, տնտեսական գործոնների վկայակոչումը դեռևս մակերեսային բնույթ է կրում: Այսպես, արդարացիորեն նկատելով, որ «կապիտալիստական արտադրությանը բնորոշ օրինաչափությունների հետևանքով» մարդը սպառող մի արարածի է վերածվում, իրավացիորեն հայտարարելով անգամ, որ սպառման հիվանդածին տեսակից ազատվելու համար «տնտեսական սիստեմում ռադիկալ փոփոխությունն անհրաժեշտություն է», Ֆրոմն իր «ռադիկալությունը» սահմանափակում է «առողջ մարդկանց համար առողջ էկոնոմիկա կառուցելու» սին կոչով: Եվ դա պատահական չէ. տնտեսական և սոցիալական բարեփոխումների հիմնավորումը Է. Ֆրոմի մոտ կրում է բացառապես բարոյախոսական բնույթ:

Կապիտալիստական, ինչպես և այլ շահագործողական հասարակության քննադատությունը բարոյախոսական կամ կրոնական դիրքերից, անկասկած, անցյալում ունեցել է որոշակի պրոգրեսիվ նշանակություն: Սակայն ներկայումս, երբ բանվոր դասակարգը, կոմունիստական ու բանվորական կուսակցություններն իրենց ձեռքին ունեն այնպիսի մի հզոր զենք, ինչպիսին մարքս-լենինյան գաղափարախոսությունն է, իսկ զարգացած սոցիալիստական հասարակարգը համոզիչ կերպով ցուցադրում է դեպի «առողջ անհատը» կողմնորոշված «առողջ էկոնոմիկայի» առավելությունները, այս պայմաններում արդեն վերացական բարոյախոսությունը ո՛չ միայն անպտուղ է, այլև հետադիմական:

Կապիտալիզմի «ռադիկալ» քննադատությունը, թեև ինքնին ցույց է տալիս բուրժուական արտադրահարաբերությունների անհամապատասխանությունը արդի գիտատեխնիկական հեղափոխության ընթացքում ձևավորվող արտադրության տեխնոլոգիական նոր եղանակին (այլ ոչ թե վերացական մարդու վերացական պահանջմունքներին), ամլանում է հեղինակի՝ քննադատվող հասարակարգի մասին իսկապես ռադիկալ եզրակացություններից խուսափելու հետևանքով: Ի վերջո, Ֆրոմը փաստորեն մերժում է կապիտալիզմից սոցիալիզմին հեղափոխական անցումը և հռչակում է կապիտալիզմի աստիճանական, սահուն վերափոխման ուղին:

Ըմբռնելով բուրժուազիայի պատմական անհեռանկարայնությունը և սակայն չհավատալով պրոլետարիատի հեղափոխական առաքելությանը, սթափ նկարագրելով կապիտալիստական հասարակարգի անբուժելի խոցերը և սակայն չընդունելով ռեալ սոցիալիզմի սկզբունքային առավելությունները, չկարողանալով դուրս գալ բուրժուական լիբերալիզմի նեղ հորիզոններից, Էրիխ Ֆրոմն իր «Նոր հասարակության» ծրագրով անխուսափելիորեն դատապարտված է «երրորդ ուղու» անպտուղ որոնումների:

Բուրժուական «ձախ» գաղափարների հռչակած «մարդաբանական» հեղափոխությունը, որը նրանց կողմից ներկայացվում է իբրև «նոր հասարակության» ստեղծման սկիզբ և միջոց, իրականում չի կարող վերացնել կապիտալիստական հասարակարգի սոցիալ-տնտեսական հեղափոխական վերակերտման օբյեկտիվ անհրաժեշտությունը, չի կարող փոխարինել սոցիալ-քաղաքական հեղափոխությանը և կամ լինել վերջինիս իրականացման միջոց: Կապիտալիզմից նոր հասարակության անցման ռեալ ուղին և միակ երաշխիքը բանվոր դասակարգի գլխավորությամբ աշխատավորական զանգվածների հետևողական հեղափոխական պայքարն է հանուն սոցիալիզմի, դեմոկրատիայի և սոցիալական առաջընթացի:

# ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՄԵՏԱՖԻԶԻԿԱՆ

Վ. Գ. ՄԿՐՏՉՅԱՆ

Մ*ԵՐ ԴԱՐԱՇՐՋԱՆԸ գիտատեխնիկական հեղափոխու-
թյունների դարաշրջան է: Արդի գիտությունն անկասե-
լիորեն մուտք է գործել հասարակական կյանքի և հոգևոր մշակույթի բոլոր
ոլորտները: Ժամանակակից գիտության և տեխնիկայի զարգացումը բնութա-
գրվում է դրանց փոխադարձ ներթափանցման միտումի ուժեղացմամբ, որի
մասին դեռ ժամանակին Մարքսը նշել է. «Եթե արտադրության պրոցեսը դառ-
նում է գիտության կիրառման ոլորտ, ապա նաև հակառակը, գիտությունն էլ
դառնում է գործոն, այսպես ասած, արտադրության ֆունկցիան» (*Из руко-
писного наследства К. Маркса. «Коммунист», 1958 г., № 17, стр. 22*):

*Գիտության ոլորտում կատարվող հեղաշրջումները փիլիսոփայության
առջև դնում են տեսական-իմացական պրոբլեմներ, իսկ փիլիսոփայությունն
իր հերթին, իր սկզբունքների ու կատեգորիալ ապարատի իմաստավորման
համար, հենվում է բնական ու հասարակական գիտությունների տվյալների
վրա: Դա նշանակում է, որ թե՛ փիլիսոփայության, և թե բնական ու հասարա-
կական գիտությունների զարգացման համար դրանց կապն անհրաժեշտ է:
Սակայն ամեն մի փիլիսոփայություն չէ, որ անհրաժեշտ է բնական ու հասա-
րակական գիտությունների զարգացման համար: Ինչպես գիտության, այնպես
էլ փիլիսոփայության պատմությունը ցույց է տալիս, որ միակ գիտական փի-
լիսոփայությունը դիալեկտիկական մատերիալիզմն է:*

*Բնությունն իր բազմազանության մեջ անվերջ է, միասնական է, գտնվում
է անընդհատ շարժման ու զարգացման պրոցեսում: Բնագիտությունը, խորա-
նալով բնական երևույթներում, կարիք ունի դիալեկտիկական ընդհանրացման:*

*Հետևաբար, բնագիտության զարգացումն անհրաժեշտաբար հանգում է
բնության պրոցեսների դիալեկտիկական մեկնաբանման: Այս առնչությամբ
կարևոր է մետաֆիզիկայի դերի արժեքավորումը: Մարքսիստական գրակա-
նության մեջ, առաջին հերթին Էնգելսի աշխատություններում, պատշաճ կեր-
պով լուսաբանվել է այդ պրոբլեմը: Ըստ նրա, մետաֆիզիկան բխել է գիտու-
թյան զարգացման տվյալ մակարդակից, սակայն հետագայում այն իր դերն
ու նշանակությունը կորցնում է բնագիտության մեջ դիալեկտիկական մտածե-
լակերպի ներթափանցման հետևանքով: «Մետաֆիզիկական մտածելակերպը,—
ասում է Էնգելսը,— թեպետ և որոշ, շատ թե քիչ լայն բնագավառներում, նա-
յած առարկայի բնույթին, օրինական և նույնիսկ անհրաժեշտ է, վաղ թե ուշ
հասնում է այն սահմաններին, որոնցից այն կողմը նա դառնում է միակողմա-
նի, սահմանափակ, վերացական և խճճվում է անլուծելի հակասությունների
մեջ, որովհետև առանձին իրերի հետևում նա չի տեսնում դրանց փոխադարձ
կապը...» (Ֆ. Էնգելս, Անտի-Դյուրինգ, 1952 թ., էջ 27):*



*Մետաֆիզիկա տերմինն առաջացել է բոլորովին պատահականորեն:
Մեր թվականությունից առաջ I դարում, Արիստոտելի աշխատությունների
հրապարակման առիթով, նրա գործերը դասակարգելիս, մետաֆիզիկա կոչե-
ցին այն երկերը, որտեղ փիլիսոփան հետազոտել է տեսության և իմացության*



*հարցերը: Ըստ Արիստոտելի, մետաֆիզիկան ունի միայն մտահայեցողական,
տեսական բնույթ և անպայման հակադրվում է պրակտիկային, փորձին: Այս-
տեղ նա առաջին փորձերն է արել առանձնացնել փիլիսոփայությունը կոնկրետ
գիտելիքներից: Արիստոտելն իր մետաֆիզիկան կոչել է որպես «առաջին փի-
լիսոփայություն», որն, ըստ էության, գիտություն է առաջին պատճառի մասին:
Միջնադարյան փիլիսոփայությունն Արիստոտելի ուսմունքը մեկնաբա-
նում է կրոնական դոգմաների տեսակետով, վերջավոր իրերի աշխարհն ըմ-
բռնելով որպես իր էության մեջ ոչ ինքնուրույն, որպես արարչագործված
բնություն: Միջնադարյան սխոլաստիկան կեցության հիմնական սկզբունքները
տեսնում է կեցությունից դուրս, որպես գերբնական երևույթ:
Վերածննդի դարաշրջանում արմատապես փոխվեց գիտության և կրոնի,
փիլիսոփայության և հավատի փոխհարաբերության հարցը: Դա հետևանք էր
այն բանի, որ այդ ժամանակաշրջանում արագ տեմպերով սկսեցին զարգանալ
բուրժուական արտադրահարաբերությունները: Ժամանակի մեծ մտածողներն
սկսեցին հրաժարվել կրոնից և սխոլաստիկայից ու աստիճանաբար գիտու-
թյունը մղեցին առաջին պլան: Սկզբում դա արվեց գիտությունը և կրոնը հաշ-
տեցնելու միջոցով: Ջ. Բրունոն գտնում էր, որ միասնական, անվերջ տիեզերքը
ոչ ստեղծվում է, ոչ էլ ոչնչանում, «բնությունը դա աստվածն է իրերի մեջ»
(Дж. Бруно, Диалоги, М., 1949 г., стр. 271):
Նոր ժամանակաշրջանը պատմության մեջ հայտնի է որպես բուրժուական
հեղափոխությունների հաղթանակի դարաշրջան: Այն հայտնի է նաև գիտու-
թյան մեջ կատարվող հեղաշրջումներով, որոնք կատարվում էին կապիտալիս-
տական արտադրահարաբերությունների զարգացման հետևանքով:
Մարդկային մտածողությունն ընթանում է ընդհանուրից դեպի կոնկրետը:
Եթե մենք հետադարձ հայացք ձգենք գիտության պատմության ընթացքի վրա,
ապա կտեսնենք, որ հին մտածողներն ընկալում էին բնության երևույթների
ընդհանրական կողմերը միայն: Էնգելսն այս առնչությամբ նկատել է, որ հին
հունական դիալեկտիկան ճիշտ էր հասկանում «երևույթների ամբողջական
բնույթը», բայց չէր բացատրում այդ ընդհանուր երևույթների առանձին մա-
սերը, առանց որոնց, այդ ընդհանուրը չէր հասկացվի: «Երբ մենք մտածաբար
դիտում ենք բնությունը կամ մարդկության պատմությունը, կամ թե մեր սե-
փական հոգևոր գործունեությունը, ապա մեր առաջ սկզբում պատկերանում է
կապակցությունների և փոխազդեցությունների անվերջ միահյուսման մի
պատկեր, որտեղ ոչինչ անշարժ և անփոփոխ չի մնում, այլ ամեն ինչ շարժվում
է, փոփոխվում, ծագում և չքանում: (Այսպիսով, սկզբում տեսնում ենք ընդհա-
նուր պատկերը, որի մեջ մասնավորություններն առայժմ ավելի կամ պակաս
չափով հետին պլան են նահանջում. մենք ավելի շատ ուշադրություն ենք
դարձնում շարժման վրա, անցումների և կապակցությունների վրա, քան թե
այն բանի վրա, թե հատկապես ինչն է շարժվում, անցում կատարում, կամ
կապակցության մեջ գտնվում): Աշխարհի նկատմամբ այս սկզբնական, պար-
զամիտ, բայց ըստ էության ճիշտ հայացքը հատուկ էր հին հունական փիլի-
սոփայությանը և առաջին անգամ հստակորեն արտահայտել է Հերակլիտը...
Սակայն, չնայած այն հանգամանքին, որ այս հայացքը ճիշտ է ընդգրկում
երևույթների ամբողջական պատկերի ընդհանուր բնույթը, այնուամենայնիվ,
դա դեռ չի կարող բացատրել այն մասնավորությունները, որոնցից բաղկա-
ցած է այդ ամբողջական պատկերը... Առանձին կողմերը (մասնավորություն-
ները) ըմբռնելու համար մենք ստիպված ենք դրանք անջատելու իրենց բնա-
կան կամ պատմական կապակցությունից և հետազոտելու ամեն մեկն առան-
ձին՝ ըստ իր հատկանիշների, ըստ իր հատուկ պատճառների ու հետևանքների
և այլն» (Ֆ. Էնգելս, Անտի-Դյուրինգ, էջ 25—26):
Կապիտալիզմի հաստատման շրջանում մարդկային միտքը մեծ առաջըն-
թաց ապրեց բնական գիտությունների բնագավառում, որը հզոր աղբյուր հան-
դիսացավ նոր փիլիսոփայական և տեսական գաղափարների համար: Բացի
այդ նյութական արտադրության զարգացումը զինեց բնագետներին այնպիսի
գործիքներով, որոնցով հնարավոր դարձավ խորանալու բնության իրերի էու-*

թյունների ճշգրտությունը հաստատվում է այն բանով, իբր դրանք համապա-
տասխանում են իրենց «ատոմար» փաստերին, այսինքն՝ զգայական տվյալ-
ներին։

Ինչպես տրամաբանական ատոմիստներին, տրամաբանական պոզիտի-
վիզմին բնորոշ է փիլիսոփայության աշխարհայացքային ֆունկցիայի ժխտ-
տումը։ Այն իր հիմնական խնդիրը համարեց լեզվի տրամաբանական վերլու-
ծությունը։ Ըստ այդ տեսության, «անիմաստ» է այն, որ ճշմարտության կամ
կեղծության հարցը լուծելու համար չկան միջոցներ։ Այս «անիմաստություն-
ները» չեն մտնում գիտության իրավասության ոլորտը, որովհետև նրանց ճըշ-
մարիտ կամ կեղծ լինելը չի կարող լուծվել բանականության միջոցով։ Վիտ-
գենշտեյնը գտնում է, թե իդեալական լեզուն իրենից պետք է ներկայացնի
տրամաբանական կատարյալ լեզու, «նրա սիմվոլները պետք է ունենան խիստ
որոշակի նշանակություն, իսկ քերականական կանոնները պետք է արգելեն
անիմաստ բառամիացությունները» (Л. Витгенштейн, Логикофилософ-
ский трактат, М., 1958 г., стр. 31)։

Համաձայն Վիտգենշտեյնի՝ իրականությունը տրամաբանական կատարյալ
լեզվի պատճենն է, դրա համար էլ իրականության և տրամաբանության հա-
րաբերության պրոբլեմը կորցնում է իր ավանդական իմաստը։ Հասկանալ նա-
խադասությունները՝ նշանակում է հասկանալ այն, ինչ որ իրականության մեջ
տեղի ունի։ Ոչ թե տրամաբանությունն է իրականության պատկերը, այլ հա-
կառակը, իրականությունն է տրամաբանության պատկերը։ Նրա մոտ աշխարհի
բովանդակությունը բխում է ձևականացված լեզվից։

Վիտգենշտեյնի կարծիքով, փիլիսոփայության պրոբլեմները վերաբերում
են ո՛չ միայն լեզվին, այլ նաև իմացությանը, ճշմարտությանը, տարածությա-
նը, ժամանակին։ Սակայն բոլոր այս պրոբլեմներն առաջ են գալիս լեզվից,
լեզվական արտահայտությունների ոչ ճիշտ օգտագործումից։ Այսպիսով, ինչ-
պես բոլոր նեոպոզիտիվիստական ուղղությունները, այնպես էլ «լեզվաբանա-
կան վերլուծությունը» ձգտում են առարկայազրկել փիլիսոփայությունը։

Արդի բուրժուական փիլիսոփայության մեջ նեոպոզիտիվիստական ուղղու-
թյունները փաստորեն բացասում են օբյեկտիվ աշխարհի փիլիսոփայական
իմացությունը, հաճախ հանգելով էկլեկտիկ մետաֆիզիկական եզրահան-
գումների։ Այժմ, երբ իմացության միակ գիտական մեթոդը դիալեկտիկական
մատերիալիզմն է, մետաֆիզիկան վաղուց դադարել է խթանել գիտության
զարգացմանը։

---

# ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻՆ ԱՐԺԱՆԻ ՀԱՄԱԼՐՈՒՄ

**Ս. Ա. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ**
ՀՍՍՀ պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության
պետական կոմիտեի նախագահ

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԸ ԵՎ ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը 1977
թվականի օգոստոսի 30-ին ընդունեցին «Պրոֆեսիո-
նալ-տեխնիկական կրթության սիստեմի սովորողների ուսուցման ու դաստիա-
րակության պրոցեսի հետագա կատարելագործման մասին» ծրագրային որո-
շումը, որտեղ ներկայացված են սովետական պրոֆեսիոնալ դպրոցի արդի վի-
ճակը և դրա ուսումնադաստիարակչական գործունեության առաջիկա խնդիր-
ները։ Պրոֆտեխնիկական կրթության սիստեմը ժողովրդական տնտեսության
համար որակյալ բանվորական կադրերի պատրաստման հիմնական դարբնոցն
է, այն զգալի ավանդ է ներդնում երիտասարդության ընդհանուր միջնակարգ-
մասնագիտական կրթության իրականացման բնագավառում։ Պրոֆտեխնիկա-
կան ուսումնարաններում աշխատանքային կոփվածք, մասնագիտական կըր-
թություն ստացած մեր շատ երիտասարդներ աշխատում են երկրի կոմունիս-
տական շինարարության տարբեր տեղամասերում, շարունակում և բազմա-
պատկում են սովետական հասարակության առաջատար ուժի՝ բանվոր դասա-
կարգի փառապանծ ավանդույթները։

Երկրի ժողովրդական տնտեսության վերելքին զուգընթաց կազմակերպ-
վեց ու կատարելագործվեց պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության համապե-
տական կուռ սիստեմ, որը տարեցտարի ընդարձակվում է եղբայրական բոլոր
հանրապետություններում, ինչպես և Սովետական Հայաստանում։ Մեր ժողո-
վուրդը հնուց ի վեր սիրել, փառաբանել է արհեստները, տեղծել հոյակապ
հուշարձաններ, կառույցներ, որոնք արժանի ճանաչում են բերել նրան։ Սերըն-
դից սերունդ փոխանցվել են արհեստները, մասնագիտությունները։ Սակայն
այդ ամենը կրել է մասնավոր բնույթ։ Սովետական իշխանության հաստատու-
մից հետո պետությունն իր ձեռքը վերցրեց պրոֆեսիոնալ դպրոցի կազմակեր-
պումը, հոգաց դրա բոլոր ծախսերը։ Սովետական պրոֆեսիոնալ դպրոցի զար-
գացման պատմությունը սերտորեն կապված է երկրի ինդուստրացման, գյուղի
սոցիալիստական վերակառուցման, ժողովրդական կրթության զարգացման
հետ։ Հայկական ՍՍՀ լուսավորության ժողովրդական կոմիսար Ասքանազ
Մռավյանը, 1926 թվականին հանդես գալով հանրապետության Կենտգործկոմի
3-րդ նստաշրջանում, ասել է. «Մինչև խորհրդային կարգերի հաստատումը Հա-
յաստանում, բացի կար ու ձևի մի քանի ողորմելի դպրոցներից, պրոֆտեխնիկա-
կան այլ տիպի դպրոցներ գոյություն չեն ունեցել երբեք. այդ գործը սկսել ենք
խամ հողի վրա... արհեստագործական կրթության ցանցի պատկերը (1926 թ.)
հետևյալն է՝ 10 գյուղատնտեսական դպրոց և 31 պրոֆեսիոնալ կուրսեր։ Այդ
շատ չի, բայց այս քիչն էլ իր բարձրության վրա կանգնած չէ, գլխավոր բացը
կահավորման խնդիրն է... պետք է մի ամբողջ շարք պրոֆտեխնիկական կուր-
սեր բանալ ժողտնտխորհի, հողժողկոմատի և աշխժողկոմատի հետ միասին»
(Ա. Մռավյան, Հոդվածներ և ճառեր, Հայպետհրատ, 1968 թ., էջ 239—240)։

կամ վարչակառավարչական հետագա աշխատանքով զբաղվելու հնարավորությունից, հակառակը, անցնելով արտադրողական աշխատանքի համալսարանը, երիտասարդն առավել հաջողությամբ կհմտանա պետական ու գիտական գործունեության տարբեր բնագավառներում։ Մեր ասածը հաստատելու համար նշենք մի քանի փաստեր։ Հայաստանի գիտությունների ակադեմիայի առաջին պրեզիդենտ Հովսեփ Օրբելին եղել է քարտաշ-որմնադիր, ատաղձագործ և գրաշար։ Տիեզերական նավերի ականավոր կոնստրուկտոր Սերգեյ Կորոլյովը, անվանի ավիակոնստրուկտորներ Արտեմ Միկոյանը, Ալեքսանդր Յակովլևը և շատ ուրիշներ իրենց մասնագիտական մկրտությունն ստացել են պրոֆտեխնիկական ուսումնարաններում և այդտեղ ձեռք բերած մասնագիտություններն օգնել են նրանց՝ խորանալու գիտության մեջ։ Պրոֆեսիոնալ ճիշտ կողմնորոշման համար մեր պատանիներին պետք է օգնեն ուսուցիչները, ծնողները, շեֆ-դաստիարակները, կոմերիտական և արհմիութենական կազմակերպությունները։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը հանրապետության ուսուցիչների VI համագումարում արտասանած ճառում ասաց, որ աճող սերնդի մասնագիտական կողմնորոշումը միայն դպրոցի հոգսը չէ։ Այն պետք է լինի կուսակցական, սովետական մարմինների, պլանավորող ու տնտեսական կազմակերպությունների մշտական հոգածության առարկան։ Հենց այդ կազմակերպությունների մասնակցությամբ պետք է ճշգրտվեն երիտասարդության մասնագիտական կողմնորոշման հիմնական ուղղությունները՝ հաշվի առնելով ժողովրդական տնտեսության պահանջմունքները, աշխատանքի այն ոլորտները, ուր այնպես անհրաժեշտ են նրանք։ Այս խնդրի պետական կարևորությունը պետք է հասկանան նաև բոլոր ծնողները։

Վերջին տարիներս հանրակրթական որոշ դպրոցներում, հատկապես Լենինականում, Գորիսում, Արթիկում, Դիլիջանում և այլուր, նկատվում են փաստեր, երբ 8-ամյա դպրոցի շրջանավարտներին հաճախ ապակողմնորոշում, կանխակալ վերաբերմունք են սերմանում միջնակարգ պրոֆտեխնիկական ուսումնարանների նկատմամբ։ Եվ, պատահական չէ, որ այդ քաղաքներում ու շրջաններում չեն կատարվում միջնակարգ-մասնագիտական ուսումնարանների ընդունելության պլանները։ Մեր կարծիքով, հանրապետության պետպլանը, լուսավորության մինիստրությունը, քաղաքային ու շրջանային ժողկրթբաժինները, դպրոցների դիրեկտորները պետք է վերահսկեն և օգնեն, որպեսզի կատարվեն ժողովրդական տնտեսության պլանով նախատեսված պետական առաջադրանքները նաև այս՝ միջնակարգ-մասնագիտական ուսումնարանները սովորողներ գործուղելու մարզում։ Անհանգստացուցիչ է հատկապես շինարարական մասնագիտությամբ կադրերի պատրաստման վիճակը։ Հայ ժողովուրդը քարտաշ-որմնադիրների, խորաքանդակի հարուստ ավանդույթներ ունի։ Սակայն, ցավոք, վերջին ժամանակներս դպրոցներում, ընտանիքներում անտեսվում է շինարարի այս ստեղծարար մասնագիտության անհրաժեշտությունը։ Նոր, լավագույն բնակարաններ պահանջում են ամենքը, բայց երիտասարդության և, հատկապես, դպրոցականների շրջանում, ինչպես հարկն է չի պրոպագանդվում մեր շինարար կադրերի համալրման կարևորությունը։

Շինարարության համար լավագույն կադրերի պատրաստումը մնում է պրոֆեսիոնալ դպրոցի աշխատողների կարևոր խնդիրներից մեկը, որի հաջող լուծման համար անհրաժեշտ է կուսակցական, կոմերիտական կազմակերպությունների, սովետական օրգանների պատշաճ օգնությունը։ Վերջին տարիներին կուսակցության ու կառավարության ձեռնարկած միջոցների շնորհիվ զգալիորեն ամրապնդվել է պրոֆեսիոնալ դպրոցի ուսումնատեխնիկական բազան։ Այժմ պրոֆտեխնիկական ուսումնարաններն ունեն 460 արհեստանոցներ, ավելի քան 920 կաբինետ-լաբորատորիաներ՝ նորագույն սարքավորումներով, 40 լինգաֆոնի կաբինետ, էկրանացված են 150 դասարաններ. միայն 1978 թ. ուսումնարաններն ստացել են 500 դիապրոյեկտորներ, 60 կոդոսկոպներ, որոնք օգնում են առավել արդյունավետ կազմակերպելու սովորողների ուսուցումը։



Հանրապետության պրոֆտեխնիկական ուսումնարաններում այժմ աշխա-
տում են մոտ 3.000 ուսուցիչներ ու վարպետներ։ Նրանցից 92 հոգի արժանացել
են հանրապետության վաստակավոր ուսուցչի և վաստակավոր վարպետի կոչ-
ման։ Այսօր հպարտությամբ կարող ենք նշել, որ Հայաստանի պրոֆեսիոնալ-
տեխնիկական ուսումնարաններում աշխատում են ավելի քան 700 ինժեներ-
ներ։ Մենք գոհունակությամբ կարող ենք հիշատակել վաստակավոր ուսուցիչ-
ներ և վարպետներ՝ Վարդուհի Ռաշմաճյանին, Ա. Ղազանչյանին, Ս. Դոխոլյա-
նին, Տ. Մելքոնյանին, Հ. Սարխոշյանին, Թամար Սարգսյանին, Հ. Քեչյանին,
Մ. Արզումանյանին, Ա. Դավթյանին, Գ. Խլղաթյանին և շատ ուրիշների, որոնք
մի քանի տասնամյակ է, ինչ իրենց ուժերն ու գիտելիքները նվիրում են բան-
վոր դասակարգի արժանի հերթափոխի պատրաստման դժվարին, շնորհակալ
գործին։ Մեծ ուշադրություն է նվիրվում ինժեներամանկավարժական կադրերի
մեթոդական-մանկավարժական որակավորման բարձրացմանը։ Երևանում
արդեն մի քանի տարի է, ինչ գործում է պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթու-
թյան սիստեմի կադրերի որակավորման բարձրացման՝ Լենինգրադի ինստի-
տուտի մասնաճյուղը։ Այստեղ կատարելագործվում են տարեկան ավելի քան
360 ուսուցիչներ և արտադրական ուսուցման վարպետներ։
Գիտատեխնիկական հեղափոխության արդի ժամանակաշրջանում հույժ
կարևոր է դասի գիտական մակարդակի բարձրացումը, ուսուցման կատարե-
լագործումը, անհրաժեշտ սարքավորումներով, հատկապես խառատային ու
ֆրեզերային հաստոցներով ապահովումը։ Այս գործում մեծ է և հանրապետու-
թյան պետպլանի ու բազային ձեռնարկությունների դերը։ Շատ ձեռնարկու-
թյուններ ակտիվ, գործնական օգնություն են ցույց տալիս ուսումնարաններին,
երիտասարդ բանվորների համար ստեղծում աշխատանքային և կենցաղի ան-
հրաժեշտ պայմաններ։ Դրանցից են, օրինակ, Երևանի «Նաիրիտ» արտադրա-
միավորումը, ավտոդողերի, Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործա-
րանները, Լենինականի Լուկաշինի անվան մանվածքային ֆաբրիկան և այլն։
Սակայն կան նաև բազային այնպիսի ձեռնարկությունների (Երևանի ֆրեզե-
րային հաստոցների գործարանի, Աբովյանի շինարարական տրեստի, կենցաղ-
սպասարկման մինիստրության սիստեմի օբյեկտների) ղեկավարներ, որոնք
պատշաճ պայմաններ չեն ստեղծում շրջանավարտների համար։ Եվ, պատա-
հական չէ, որ ուսումնարանների շրջանավարտներն աշխատանքի են անցնում
այն գործարաններում ու ֆաբրիկաներում, որտեղ նրանց ընդունում են բար-
յացակամորեն և ստեղծում պատշաճ պայմաններ։ Մտահոգիչ է նոր պրոֆ-
տեխնիկական ուսումնարանների շինարարության անբավարար ընթացքը։
Խիստ թերակատարվել են հնգամյակի անցած երեք տարիների շինարարության
պլանները։ 1978 թվականին ուսումնական նոր համալիրների կառուցման
պլանը կատարվել է 71,8, իսկ շահագործման հանձնված շենքերինը՝ 64 տոկո-
սով։ Նման վիճակն անհանդուրժելի է։
Պրոֆեսիոնալ ուսումնարանների աշխատողների առջև խնդիր է դրված՝
հասնել ուսումնադաստիարակչական պրոցեսի օրգանական միասնության, սո-
վորողներին ներարկել գաղափարաքաղաքական և բարոյական վեհ հատկա-
նիշներ, սեր՝ ընտրած մասնագիտության նկատմամբ, համակել հայրենիքի
բարօրության համար ազնվորեն ու բարեխղճորեն աշխատելու ձգտումով։
«Մեր ընդհանուր հոգսն այն է,— ասել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— որ սովետական
երկրի պատանիներն ու աղջիկները մեծանան ոչ թե որպես անտարբեր արհես-
տավորներ, այլ որպես իրենց գործի արվեստագետներ, վարպետներ, լինեն գոր-
ծով տարված մարդիկ, այնպիսի մարդիկ, որոնց համար աշխատանքը դառնա
պահանջմունք և բավականություն» (Լենինյան կուրսով, հ. 2, «Հայաստան»
հրատ,. 1970 թ., էջ 367)։ Ծրագրային այս ցուցումները պրոֆեսիոնալ-տեխ-
նիկական ուսումնարանների և հանրակրթական դպրոցի աշխատողների, բոլոր
ծնողների համար դաստիարակչական գործունեության լավագույն ուղեցույց
են։ Բոլորիս պարտքն է՝ վճռականորեն բարելավել սովորող երիտասարդության
աշխատանքային դաստիարակությունը և նախապատրաստել նրան արտա-
դրողական աշխատանքի։

# ԿԱԴՐԵՐԻՆ ԳՆԱՀԱՏԵԼ ԸՍՏ ՆՐԱՆՑ ԳՈՐԾԻ

**Գ. Ս. ՆԱԽՇՔԱՐՅԱՆ**
ՀԿԿ Նոյեմբերյանի շրջկոմի առաջին քարտուղար

*Կուսակցական ղեկավարման հաջողության կարևոր պայմանը աշխատանքի լենինյան ոճն է։ Ինչպես շեշտեց ՍՄԿԿ XXV համագումարը, այդ ոճին բնորոշ է գիտական մոտեցումը բոլոր հասարակական պրոցեսների նկատմամբ, այն ենթադրում է բարձր պահանջկոտություն, բացառում ինքնագոհությունը, հակադրվում բյուրոկրատիզմի ու ձևամոլության ամեն տեսակ դրսևորումներին։*

*Արժարժելով այս խնդիրները, ակամա վերհիշում ես ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի հուշագրությունները, որոնք համակողմանի արտացոլում են ղեկավարման լենինյան ոճի սկզբունքները պրակտիկայում կիրառելու ուսանելի փորձը։ Ընկ. Բրեժնևը կուսակցական աշխատանքում գլխավորը համարում է իրադրության քաղաքական վերլուծությունը, մարդկանց հետ գործելու կարողությունը։ Կուսակցական ղեկավարը «պետք է կարողանա ոչ թե փոխարինել մյուս աշխատողներին, այլ գտնի իր հետ աշխատողների, վստահի նրանց, նրանց հետ կիսի հոգսերն ու աշխատանքը, պատասխանատու որոշումներն ընդունի կոլեկտիվ կերպով» (Լ. Ի. Բրեժնև, Վերածնունդ, «Հայաստան» հրատ., 1978 թ., էջ 44)։*

*Սահմանելով կուսակցական մարմինների և կուսկազմակերպությունների ղեկավարման հիմնական սկզբունքները՝ աշխատանքի լենինյան ոճն օգնում է հաջողությամբ լուծելու առաջադրված խնդիրները ներկուսակցական աշխատանքի տարբեր բնագավառներում։*

*Կուսակցական ղեկավարման բարձր արդյունավետությունը մեծ չափով պայմանավորված է ճիշտ կադրային քաղաքականությամբ։ ՍՄԿԿ XXV համագումարի բնորոշմամբ դա այն հզոր լծակն է, որով կուսակցությունը ներգործում է հասարակական զարգացման ընթացքի վրա։ Կուսակցության Նոյեմբերյանի շրջկոմը ձգտում է առավելագույն արդյունավետությամբ օգտագործել այդ լծակը, այն ծառայեցնել շրջանի էկոնոմիկայի զարգացմանը, կուլտուրական կյանքի առաջընթացին։ Դրա շնորհիվ շրջկոմը որոշակի հաջողությունների է հասել կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության վերաբերյալ ՀԿԿ Կենտկոմի 1975 թվականի հունվարյան պլենումի որոշումների կենսագործման բնագավառում։ Հատկանշական է, որ այսօր մեր շրջանի գյուղատնտեսական, արդյունաբերական ձեռնարկություններն ու հիմնարկությունները ղեկավարում են բարձրագույն կրթությամբ մարդիկ, գաղափարապես կոփված կոմունիստներ։*

*Արմատապես փոխվել է սովխոզների մասնագետների ու բրիգադավարների որակական կազմը։ Բոլոր սովխոզներն ու գյուղատնտեսական ձեռնարկություններն ապահովված են բարձրորակ կադրերով։ Այժմ սովխոզների 84*



*բրիգադավարներից 30-ն ունեն բարձրագույն, մյուսները՝ միջնակարգ-մասնագիտական կրթություն, բոլոր գյուղատնտեսները, անասնաբույժներն ու անասնաբույծները, մեխանիկ-ինժեներները և մնացած առաջատար մասնագետները բարձրագույն կրթության տեր մարդիկ են, ոմանք ունեն գիտությունների թեկնածուի աստիճան։*

*Մեզ համար գործողության ուղեցույց է ՍՄԿԿ XXV համագումարի հետևյալ կարևոր պահանջը. ժամանակակից ղեկավարը պետք է իր մեջ կուսակցականությունն օրգանապես զուգորդի խոր բանիմացության հետ, կարգապահությունը՝ նախաձեռնության և գործի նկատմամբ ստեղծագործական մոտեցման հետ (տե՛ս ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 105)։ Մեր շրջանի բարձր ու միջին օղակի կադրերի թվում քիչ չեն այնպիսի մարդիկ, որոնք օժտված են այդպիսի հատկանիշներով և որոնց հմուտ ղեկավարության շնորհիվ տնտեսություններն առաջընթացի լուրջ քայլեր են անում։*

*Հաղթանակ սովխոզի դիրեկտոր Արշավիր Հայրապետյանին ճանաչում են բոլորը։ Շուրջ երեսուն տարի, հիմնադրման առաջին օրից, նա ղեկավարում է այդ տնտեսությունը։ Հաշվարկ անել ամեն մի քայլափոխում, գտնել բարձր արդյունավետության հասնելու լավագույն ուղիները, այդ գործում ընդգրկել միջին օղակի բոլոր ղեկավար կադրերին ու առաջավորներին, լավագույն օրինակները տարածել աշխատավորների շրջանում— սրանք են Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահության անդամ, սոցիալիստական աշխատանքի հերոս, հանրապետության վաստակավոր գյուղատնտես Արշավիր Հայրապետյանի գործունեության բնորոշ կողմերը։ Նույն հատկանիշներով կարելի է բնութագրել նաև սովխոզի կուսկազմակերպության բյուրոյի քարտուղար Էդիկ Աղաբաբյանին։ Բյուրոն դարձել է այն մարտական շտաբը, որտեղ լուծվում են սովխոզի կյանքին վերաբերող ամենաբազմազան հարցերը։ Կուսակցական ժողովներում ու բյուրոյի նիստերում քննարկվում են բրիգադավարների հաշվետվությունները, միջոցներ ձեռնարկվում առաջավորների փորձը տարածելու և ետ մնացող չունենալու համար։ Հոգ է տարվում բոլոր այգեգործների մասնագիտական որակավորման, գիտելիքների խորացման ու հարստացման մասին։*

*«Ամեն մի գործում ճաշակ և կուլտուրա»— այս նշանաբանով են առաջնորդվում Հաղթանակի կադրերը։ Ծոխ չէ սովխոզի դիրեկտորի աշխատանքային առանձնասենյակը, բայց գործարարությամբ համակող այդ սենյակում կա մի շքեղ զարդարանք, որի մասին հաղթանակցիները հպարտությամբ են խոսում. դա այն բազմաթիվ դիպլոմներն են, որ նվաճել է սովխոզը բարձր բերքի համար։ Եվ դրանց կողքին մրցանակային պատվոգրեր՝ ավանի լավագույն բարեկարգման ու կառուցապատման համար։ Տարիների համառ ու քրտնաջան աշխատանքը մեծ հաջողություններ է բերել սովխոզին՝ փառքի պատվանդանին բարձրացնելով կոլեկտիվին ու իր ղեկավարին։ Այսօր շրջանում արտադրված պտղի մեկ քառորդը տալիս են հաղթանակցիները։*

*Հմուտ ղեկավարի համբավ ունի Նոյեմբերյանի անտառտնտեսության դիրեկտոր, հանրապետության վաստակավոր անտառաբույծ Գառնիկ Ավագյանը։ Ավելի քան երեք տասնամյակ է, ինչ նա իր կյանքը, ողջ էությունը կապել է անտառի, հայրենի բնության հետ։ Անտառագործների կոլեկտիվում աշխատանքն սկսել է ավագ անտառապահի համեստ գործից, իսկ այսօր կենսաբանական գիտությունների թեկնածու է, մի պատկառելի տնտեսության ղեկավար։ Նա իր գործում նորարար է և գիտական որոնումների ճանապարհին հասել է անվիճելի հաջողությունների։*

*Գառնիկ Ավագյանի գործելակերպի մեջ հատկանշականը խստագույն պահանջկոտությունն է իր և ենթակաների նկատմամբ, կատարման հետևողական ստուգումը։ Նա համառորեն հասնում է առաջադրված խնդրի լուծմանը, ծրագրած նպատակի իրականացմանը և այդպես էլ պահանջում է իր ենթականերից։ Նրա համար կես ճանապարհ չկա, հարցի վերջնական լուծման մեջ է տեսնում հաջողության գրավականը։ Վերջնակետին հասնելու ճանապարհին, հասկանալի է, հանդիպում են և խոչընդոտներ, դժվարություններ, ոչ դյուրին բաց-*

մտավորականության շրջանում, հատկապես կրթադաստիարակչական բնագա-
վառում։ Շրջանի մտավորականության արժանի հարգանքն են վայելում ուս-
մասվարներ Ասյա Պողոսյանը, Արուս Ամիրաղյանը, Սեդա Առաքելյանը,
Սվետլանա Խեչումյանը և ուրիշներ։
Կադրային քաղաքականությունը սերտորեն առնչվում է կուսշարքերի աճի
ու երիտասարդ կոմունիստների դաստիարակության հետ։ Բնականաբար, այդ
հարցերը մեզ մոտ հաճախ քննարկվում են իրենց միասնության մեջ։ Երկու
տարի առաջ կուսշրջկոմի բյուրոն, քննարկելով այդ գործի դրվածքը Այրումի
պահածոների գործարանի կուսկազմակերպությունում, նշեց կուսբյուրոյի
անբավարար աշխատանքը. նախընթաց երեք տարիներին կազմակերպության
շարքերը արտադրության երիտասարդ առաջավորներով չէին համալրվել, ան-
բավարար էր երիտասարդ կոմունիստների կրթության ու դաստիարակության
գործը։ Շրջկոմի մշակած հանձնարարականների իրականացումից հետո ան-
ցած երկու տարում գործարանի կոմունիստների թիվն ավելացավ յոթ առաջա-
վոր երիտասարդներով, 12-ն ընդգրկվել են հեռակա ուսուցման մեջ, 21 կոմե-
րիտականներ կատարում են կուսակցական հանձնարարություններ։
Կադրերի հետ տարվող աշխատանքն ինքնանպատակ չէ։ Այն կոչված է
բազմապատկելու տնտեսական-կուլտուրական շինարարության բնագավառում
ձեռք բերված հաջողություններն ու նվաճումները։ Տարակույս չի կարող լինել,
որ արտադրության այս կամ այն բնագավառի գործերի վիճակն ուղիղ համե-
մատական է կադրերի գործունեության որակին։
Երկու տարի առաջ շրջանը լուրջ թերացումներ ունեցավ խաղողագործու-
թյան բնագավառում։ Այդ բանում պատասխանատվության առավել մեծ բա-
ժինն ընկնում էր Լալվարի սովխոզի վրա, որը նկատելի տեսակարար կշիռ ունի
շրջանի խաղողագործական տնտեսությունների մեջ։ Կուսշրջկոմի պլենումում
քննարկվեց սովխոզի կուսբյուրոյի հաշվետվությունը՝ խաղողագործության
զարգացման նպատակով տարվող աշխատանքի առումով։ Խիստ քննադատվեց
սովխոզի ղեկավարությունը, դրությունը շտկելու համար մշակվեցին միջոցա-
ռումներ։ Դրանց իրականացման ընթացքում պարզվեց, որ որոշ աշխատողնե-
րի, մասնավորապես գլխավոր գյուղատնտես Գեղամ Հակոբյանի վարքագիծը
բնավ չի նպաստում աշխատանքային բարենպաստ մթնոլորտի ստեղծմանը,
բրիգադավարներից շատերը անհրաժեշտ պատասխանատվությամբ չեն վերա-
բերվում գործին։ Հարկ եղավ փոխել գլխավոր գյուղատնտեսին, ինչպես նաև
արտադրության այլ ղեկավարների։ Սովխոզի դիրեկցիան ու կուսբյուրոն իրենց
շուրջը համախմբեցին նոր, թարմ ուժերը, որոնց հոսքը լայն թափ հաղորդեց
արտադրությանը։ Անցած երեք տարիներին լալվարցիներն աճեցրին պտղի
առատ բերք՝ 2.700 տոննա, որը պլանը գերազանցում է 560 տոննայով։
Տարիներ առաջ շրջկոմին լուրջ մտահոգություն էր պատճառում գործերի
վիճակը Շավարշավանի սովխոզում։ Տնտեսության ղեկավարման պրակտի-
կայում նկատվում էին էկոնոմիկայի մեջ խորանալու, հեռանկարները տեսնելու
անկարողություն, խնդիրները լուծելու անճարակություն։ Այստեղ տարիներ
շարունակ ետ էին մնում ֆերմաները, ցածր բերք էր ստացվում հացահատի-
կային կուլտուրաներից։ Շրջկոմին մեծ օգնություն ցույց տվեց Հայաստանի
կոմկուսի Կենտկոմը։ Քննարկելով սովխոզային արտադրության ղեկավարման
բնագավառում Շավարշավանի կուսկազմակերպության գործունեության վի-
ճակը, Կենտկոմի բյուրոն արմատական միջոցառումներ մշակեց։ Կենտկոմի
որոշման ոգով փոփոխություններ կատարվեցին սովխոզի ղեկավարության
կազմում, առաջ քաշվեցին նոր մարդիկ, երիտասարդ էնտուզիաստներ։ Սով-
խոզի դիրեկտոր առաջադրվեց բարձրագույն կրթությամբ գյուղատնտեսության
մասնագետ Սամվել Կիրակոսյանը։ Նրա ղեկավարությամբ վերջին տարիներին
արտադրության բոլոր բնագավառներում սովխոզը վերելք է ապրում։ Անջրդի
հողերի յուրաքանչյուր հեկտարից ստացվում է 31,5 ցենտներ հացահատիկի
բերք։ Ռեկորդային բերք է աճեցվում ծխախոտի դաշտերում։ Արմատավորվել
է մատղաշների ինտենսիվ բտման եղանակը, բարձրացել է կովերի կաթնա-
տվությունը, տնտեսությունը նվաճել է առաջավոր բնագծեր։



1977 թվականին լավագույն արդյունքների համար Շավարշավանի սով-
խոզը նվաճեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և
ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը։ Սովխոզը դարձել է գյուղա-
տնտեսական արտադրության կազմակերպման լավագույն փորձի իսկական
դպրոց։
Շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները հատուկ ուշադրու-
թյուն են նվիրում արտադրության կոնկրետ տեղամասերը հասուն, բանիմաց ու
գործունյա կադրերով համալրելու գործին։ Միջին օղակում աշխատում է կադ-
րերի մի ստվար ջոկատ։ Շրջկոմն ամեն տարի անդրադառնում է նրանց կազ-
մին, մտահոգվում, որպեսզի այդ օղակը մշտապես համալրվի մասնագիտական
կրթություն ունեցող, կազմակերպչական լավագույն հատկանիշներով օժտված
և հասարակական բարձր ակտիվություն դրսևորող մարդկանցով։ Կուսակցա-
կան-հասարակական հանձնարարությունների միջոցով շրջկոմն ու կուսկազ-
մակերպությունները ձգտում են բարձրացնել այդ օղակի կադրերի աշխատան-
քային-քաղաքական ակտիվությունը։ Պետք է ասել, դրանց մեջ անվանի
շատ մարդիկ կան Նոյեմբերյանի շրջանում։ Նրանցից մեկը՝ Լալվարի սովխոզի
կաթնապրանքային ֆերմայի վարիչ Սարգիս Աբովյանը, ահա քառորդ դար է,
ինչ ղեկավարում է այդ բնագավառը։ Այդ տարիներին Լալվարում ստեղծվել է
բարձր մթերատու ապրանքային ֆերմա, շատ կթվորուհիներ նվաճել են 3.000-
ականների բնագիծը։
Արդարությունը պահանջում է ասել, որ շրջանի ոչ բոլոր սկզբնական կուս-
կազմակերպություններն են լրջորեն բարելավել կադրերի ընտրության ու դաս-
տիարակության գործը։ Առանձին կուսկազմակերպություններ հոգածությամբ
չեն վերաբերվում կադրերի ընտրությանը, անուշադիր են նրանց գործունեու-
թյան նկատմամբ։ Անցյալ տարի Պտղավանի սովխոզում կաթնապրանքային
ֆերմայի վարիչ առաջադրվեց Սևան Թանդիլյանը։ Բայց, ինչպես ցույց տվեց
պրակտիկան, դա վաղահաս որոշում էր. Թանդիլյանին պակասում էր ո՛չ միայն
փորձը, այլև պատասխանատվությունը։ Ֆերման սկսեց զիջել դիրքերը, իսկ
դա, որքան էլ տարօրինակ է, չէր մտահոգում սովխոզի ղեկավարությանը։ Ավե-
լին, վերահսկողության բացակայության հետևանքով այստեղ արմատավորվեց
տնավարությունը, ֆերմայի վարիչն սկսեց սեփականատիրոջ աչքով նայել հա-
սարակական ունեցվածքին։ Հետևա՞նքը. տարեվերջի ստուգումների ժամա-
նակ 33 գլուխ խոշոր եղջերավոր անասունի պակասորդ գրանցվեց, և գործը
հանձնվեց դատաքննչական մարմիններին։
Մի այլ օրինակ։ Ծանր իրադրություն էր ստեղծվել գազի շահագործման
շրջանային գրասենյակում։ Գուրգեն Ավագյանը, որին վստահված էր գրա-
սենյակի ղեկավարությունը, չկարողացավ իր շուրջը համախմբել կոլեկտիվին
և նրա ուժերն ուղղել գրասենյակի առջև ծառացած խնդիրների լուծմանը։ Նրա
հասցեին շատ բողոքներ էին ստացվում։ Հեղուկ գազը անկանոն էր մատակա-
րարվում բնակչությանը, գրասենյակում ընկել էր աշխատանքային կարգապա-
հությունը։ Կոլեկտիվում ստեղծվել էր նյարդայնության, լարվածության և
դժգոհության մթնոլորտ. չհաշտվելով այդ իրավիճակի հետ, ոմանք հեռացան
գրասենյակից։ Գ. Ավագյանի անպատասխանատվության մասին քանիցս
գրվել էր շրջանային «Միածան» թերթում։ Հարցը հասավ այնտեղ, որ կուս-
շրջկոմի բյուրոն նրան հեռացրեց կուսակցության շարքերից՝ իր պաշտոնական
դիրքը չարաշահելու համար և ազատեց աշխատանքից։
Լուրջ թերությունների ու անպատասխանատվության դրսևորման համար
աշխատանքից հեռացվել են Հոկտեմբերի ու Բաղանիսի սովխոզների կաթնապ-
րանքային ֆերմաների վարիչներ Սամադ Օսմանովն ու Միշա Միքայելյանը,
Ոսկեպարի սովխոզի անասնապահական բրիգադի բրիգադավար Մադաթ Աղ-
բալյանը։ Մեզ լրջորեն մտահոգում էր Բերդավանի սովխոզի միջին օղակի
կադրերի մի մասի անբավարար գործունեությունը։ Նրանք դեռևս անհրաժեշտ
ձևով չէին կազմակերպում իրենց վստահված տեղամասերի գործերը։ Մի՞թե
ցածր պատասխանատվության պատճառով չէր, որ Գուրգեն Մամաջանյանի ու
Հակոբ Բայրամյանի ղեկավարած բրիգադները տարիներ շարունակ չէին կա-

տարում պլանները: Եվ զարմանալի է, թե ինչպես սովխոզի կուսկոմիտեն երկար ժամանակ հանդուրժում էր նման վերաբերմունքը: Այդ տեղամասերն այժմ գործուղվել են նոր, ունակ կադրեր:

Կուսկազմակերպությունների խնդիրն է, ելնելով ՀԿԿ Կենտկոմի ցուցումից, ամեն կերպ ամրապնդել միջին օղակի կադրերը, ուշի-ուշով հետևել նրանց աճին:

Կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացումը մեծապես պայմանավորված է այն բանով, թե ում է վստահված նրանց ղեկավարումը: Ելնելով ՍՄԿԿ XXV համագումարի պահանջներից՝ շրջկոմը հատուկ ուշադրություն է նվիրում կուսկազմակերպությունների քարտուղարների որակական կազմի բարելավմանը: Նրանց քաղաքական աճին ու հասարակական ակտիվության բարձրացմանը: Այժմ 71 սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներից 39-ն ունեն բարձրագույն, մյուսները՝ միջնակարգ կրթություն: Նրանցից 28-ը կանայք են: Շրջկոմին կից գործում է քարտուղարների դպրոց, որի պարապմունքները տեղի են ունենում ամսական մեկ անգամ: Այստեղ շերտավորված աշխատանք է տարվում, քարտուղարներն ուսումնասիրում են կուսակցական, տնտեսական ու սովետական շինարարության բազմապիսի հարցեր ու խնդիրներ: Հաջողությամբ են ընթանում կուսշրջկոմին կից գործող կուսակցական և տնտեսական ակտիվի սեմինարների պարապմունքները:

Շրջանում մեծ ուշադրություն է նվիրվում աշխատանքի կազմակերպման ուսանելի փորձի փոխանակմանը: Շրջկոմն արդեն ստեղծել է իր հենակետերը՝ այս կամ այն բնագավառում տնտեսական մարմինների ու սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքի նվաճումները գործնականորեն ուսումնասիրելու համար: Փորձի փոխանակման նպատակով պարբերաբար կազմակերպում ենք էքսկուրսիաներ, փոխայցելություններ, որոնց արդյունքները քննարկում ենք պրակտիկ կոնֆերանսներում, կուսշրջկոմի բյուրոյի նիստերում, այդ առթիվ լույս են ընծայվում հատուկ բյուլետեններ, նյութեր հրապարակվում շրջանային թերթում:

Կադրերի ակտիվության բարձրացմանն անչափ նպաստում է նրանց ընդգրկումը քաղաքական-գաղափարական աշխատանքի ոլորտը: Այժմ շրջանի շատ սովխոզների դիրեկտորներ, հիմնարկ-ձեռնարկությունների ու կազմակերպությունների 26 ղեկավարներ պրոպագանդիստներ են, բարձր ու միջին օղակի 145 ղեկավար աշխատողներ «Գիտելիք» ընկերության, շրջկոմի դասախոսական խմբի անդամներ են, քաղինֆորմատորներ ու ագիտատորներ: Հմուտ պրոպագանդիստի համբավ ունի Այրումի պահածոների գործարանի դիրեկտոր Տելեմակ Դավթյանը, որը ղեկավարում է մարքսիզմ-լենինիզմի հիմունքներն ուսումնասիրող քաղդպրոցը: Նա ուսումնասիրող թեման սերտորեն առնչում է արտադրության կոնկրետ խնդիրների, օրվա պահանջների հետ, իր ունկնդիրներին սովորեցնում տեսական ամեն մի դրույթից անել պրակտիկ եզրակացություններ, տեսական գիտելիքները ծառայեցնել գործնական խնդիրների լուծմանը:

Կադրերի ակտիվության ու պատասխանատվության բարձրացման նպատակով նրանք ընդգրկվում են շրջկոմի բյուրոյի, շրջսովետի գործկոմի նիստերում քննարկվելիք հարցերի նախապատրաստմանը, մասնակցում տարբեր հանձնաժողովների գործունեությանը: Այդ խնդրին մեծ չափով նպաստում է շրջկոմի բյուրոյում կադրերի հաշվետվության քննարկումը:

Կադրային ճիշտ քաղաքականությունը տնտեսական հաջողությունների գրավականն է: ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների ոգով մենք ձգտում ենք է՛լ ավելի բարելավել կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության գործը, այն դիտում ենք որպես մեր առաջընթացի, տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրների հաջող լուծման հզոր լծակ:

---

# ԿՈԼԵԿՏԻՎԻ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ. ՓՈՐՁ ԵՎ ՆԿԱՏԱՌՈՒՄՆԵՐ

**Վ. Հ. ԴԱՇՅԱՆ**
«Հայէլեկտրալույս» արտադրամիավորման
կուսկոմիտեի քարտուղար

ԿՈԼԵԿՏԻՎՆԵՐԻ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ սկզբնական կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, տնտեսական ղեկավարության գործունեության գլխավոր խնդիրներից է, խնդիր, որը բխում է մեր հասարակարգի բուն էությունից և կարևորվում է հատկապես կուսակցության տնտեսական քաղաքականության արդի փուլում: «Մեր հասարակարգի, մեր սոցիալիստական հասարակության հումանիզմը միշտ էլ, նույնիսկ ծանր ժամանակներում, վառ կերպով դրսևորվել է սովետական մարդկանց աշխատանքի պայմանների, նրանց առողջության պահպանման, նրանց կրթության և կուլտուրական մակարդակի աճի նկատմամբ ցուցաբերվող հոգատարության մեջ» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 182):

ՍՍՀՄ նոր Սահմանադրությունում մի ամբողջ գլուխ է հատկացված սովետական ժողովրդի սոցիալական զարգացման ու կուլտուրական մակարդակի հետագա բարձրացման հարցերին: Այստեղ օրենսդրորեն վավերացված է այն իրողությունը, որ պետությունը հոգում է սովետական քաղաքացու բազմակողմանի զարգացման, նրա հասարակական ակտիվության բարձրացման, արտադրության, մարդկանց աշխատանքի պայմանների բարելավման, նրանց եկամուտների ավելացման, սպառման հանրային ֆոնդերի աճի ու արդարացի բաշխման, ինչպես նաև ժողովրդի նյութական և հոգևոր պահանջմունքների բավարարման հետ առնչվող այլ հարցերի մասին: Սրանք մեր կյանքի ռեալ իրողություններն են, մեր բարեկեցության մակարդակի բարձրացման գլխավոր միտումը, որ կարելի է և՛ տեսնել, և՛ զգալ:

Սոցիալական զարգացման դինամիկայի մասին հստակ պատկերացում է տալիս արտադրական կոլեկտիվների կյանքը: Սովետական յուրաքանչյուր քաղաքացի լավ է տեսնում, թե ինչպես են խորացել ու ընդլայնվել ձեռնարկությունների կոլեկտիվների սոցիալ-տնտեսական իրավունքները, որքան ավելի ծանրակշիռ են դարձել դրանց ընձեռած նյութական երաշխիքները: Օր-օրի փոխվում, ավելի հետաքրքրական ու բովանդակալից է դառնում մեր կյանքը, արագանում են արտադրական կոլեկտիվների սոցիալական զարգացման տեմպերը: Եվ այս կարևորագույն բնագավառում գործունեության լայն ասպարեզ ու մեծ դեր ունեն կուսկազմակերպությունները: Նրանք կոչված են հարստացնելու արտադրության տեխնիկական աճի և կոլեկտիվի սոցիալական զարգացման փոխադարձ կապը, խորությամբ վերլուծելու առկա ռեզերվները, դրանք տեսնելու նաև հեռանկարի պրիզմայով: Ձեռնարկությունը ոչ միայն տեխնիկական ու տնտեսական, այլև սոցիալական սիստեմ է: Այն որոշակի սոցիալական խմբերի, մարդկանց փոխհարաբերությունների բարդ կոմպլեքս է:

«Հայէլեկտրալույս» արտադրամիավորման Երևանի էլեկտրալամպերի գործարանի կուսակցական, արհմիութենական կոմիտեները, տնտեսական ղեկավարությունը մեծ ուշադրություն են նվիրում կոլեկտիվի սոցիալական զարգացման կոմպլեքսային պլանի մշակմանը, աշխատանքի սոցիալական միջավայրի բարելավմանը։ Կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանի մշակմանը նախորդում է սոցիոլոգիական բնույթի մանրազնին հետազոտություն։ Կուսկոմիտեի անմիջական ղեկավարությամբ կազմվում են հարցաթերթիկներ, որոնք տրվում են կոլեկտիվի ամեն մի անդամի։ Մենք ձգտում ենք դրանցում արտացոլել և՛ արտադրական, և՛ սոցիալական բոլոր այն գործոնները, որոնք կարող են որոշակիորեն անդրադառնալ մարդկանց աշխատանքի վրա։ Թերթիկում, օրինակ, կան այսպիսի հարցեր. «Ձեր կատարած աշխատանքը համապատասխանո՞ւմ է ձեր մասնագիտությանը, հնարավորության դեպքում կցանկանայի՞ք տեղափոխվել մասնագիտությանը համապատասխանող աշխատանքի», «եթե աշխատանքը հերթափոխային է, ինչպե՞ս եք դասավորում ընտանեկան կյանքը», «գո՞հ եք ձեր առօրյա աշխատանքի բովանդակությունից», «բավարարո՞ւմ են ձեզ աշխատանքային պայմանները», «համապատասխանո՞ւմ է ձեր աշխատավարձը աշխատանքի որակին ու քանակին», «ինչպե՞ս եք գնահատում աշխատանքային կարգապահության և կարգուկանոնի ամրապնդման համար ադմինիստրացիայի և հասարակական կազմակերպությունների ձեռնարկած միջոցառումները», «ինչպե՞ս կցանկանայիք օգտագործել ազատ ժամանակը» և այլն։ Նույն հարցաթերթիկում հարցում է արվում, թե ինչո՞ւ է աշխատողն ընտրել հատկապես այս գործարանը, արդյոք դա կապված չէ՞ բնակարանային պայմանների բարելավման, աշխատանքային կարիերայի հնարավորության, կոլեկտիվում ստեղծված փոխհարաբերությունների, աշխատավայրի ու տան մոտիկության, նյութական խրախուսման, աշխատանքի կազմակերպման, ազատ ժամանակի լավագույն ձևով օգտագործման և այլ հարցերի հետ։

Կուսակցական կազմակերպությունները հարցաթերթիկների լրացման օրերին բացատրական լարված աշխատանք են տանում կոլեկտիվների անդամների շրջանում, որպեսզի պատասխանները լինեն օբյեկտիվ։

Իսկ որպեսզի մարդիկ հավատան, որ իրենց կարծիքը հաշվի կառնվի, կօգնի և՛ աշխատանքի, և՛ կենցաղի ճիշտ կազմակերպմանը, անհրաժեշտ է ոչ թե հավաստիացնել, այլ գործով, պրակտիկայով ապացուցել։ Ահա բնորոշ մի օրինակ։ Երբ մի քանի տարի առաջ կոլեկտիվի անդամներին նման հարցաթերթիկներ էին տրվում, դրանց մի մասը ետ էր վերադարձվում առանց լրացվելու։ Շատ էին բողոքները աշխատանքային պայմանների, բնակարաններ ստանալու ժամկետների, գիշերային հերթափոխի, տրանսպորտի, սպորտային միջոցառումների և այլ հարցերի վերաբերյալ։ Սակայն, երբ գործարանը բավականաչափ ֆոնդեր ստեղծեց կուլտկենցաղային, բնակարանային շինարարության համար, և այդ նպատակով որոշակի գործ արվեց, փոխվեց նաև մարդկանց վերաբերմունքը առաջադրված հարցերի և աշխատանքի նկատմամբ։ Նրանք ոչ միայն պատասխանում էին հարցերին, այլև կոնկրետ առաջարկություններ ու դիտողություններ անում արտադրության արդյունավետությունը բարձրացնելու, հանգիստը ավելի ակտիվ կազմակերպելու վերաբերյալ։

Եվ այդ բոլոր առաջարկություններն ու դիտողությունները, որոնք հիմնավորված էին ու գործին նպաստող, հաշվի առնվեցին կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանը մշակելիս։ Ահա մի օրինակ։ Թվում է, թե ընդմիջման կազմակերպումը մի առանձին դժվարություն չէ, սակայն երբ կոլեկտիվում աշխատում է 6.000-ից ավելի մարդ, և նրանք պետք է մեկ ժամ 15 րոպեում նախաճաշեն, ապա ինքնըստինքյան հասկանալի է դառնում, որ հարցն այնքան էլ հասարակ չէ։ Եվ ահա աշխատողներն առաջարկեցին սահմանել որոշակի գրաֆիկ բոլոր արտադրամասերի համար։ Գործարանի դիրեկցիան, կուսկազմակերպությունը քննարկեցին առաջարկությունը, քանի որ, բացի ընդմիջման գրաֆիկ սահմանելուց, անհրաժեշտ էր գործն այնպես կազմակերպել, որ չխախտ-



վեր բուն արտադրության ռիթմը, հնարավոր լիներ ընդմիջման ժամին կարգի բերել մեքենաներն ու մեխանիզմները։ Հաջորդականության սկզբունքով սահմանված գրաֆիկը բանվոր-ծառայողներին հնարավորություն ընձեռեց ընդմիջման ժամանակ ոչ միայն նախաճաշել, այլև մի փոքր հանգստանալ, թերթ կարդալ, հաճախել գրադարան։

Կուսակցական կոմիտեն, տնտեսական ղեկավարությունը և հասարակական կազմակերպությունները, կոլեկտիվի գործունեության հեռանկարային հարցերը մշակելիս, ելնում են այն սկզբունքից, որ մարդիկ ըստ կարելվույն ավելի շատ օգտվեն իրենց իսկ ստեղծած բարիքներից, ունենան հանգստանալու և բուժվելու բոլոր պայմանները։ Այսօր մեր կոլեկտիվի հարյուրավոր անդամներ բուժվում կամ հանգստանում են էլեկտրալամպերի գործարանի պրոֆիլակտորիայում, Կիրովականի «Մայմեխ» հանգրվանում։ Շուտով շահագործման կհանձնվեն Արզականում կառուցվող 227 տեղանոց նոր հանգրվանը և Կիրովականի մեր պիոներական ճամբարի երկրորդ հերթը։ Յուրաքանչյուր տարի կոլեկտիվի 600 անդամներ համապատասխան ուղեգրերով մեկնում են Միության տարբեր առողջարաններ՝ հանգստանալու, բուժվելու կամ տուրիստական ուղեգրերով շրջագայում են եղբայրական հանրապետություններում և արտասահմանյան երկրներում։

Կոլեկտիվի արտադրական ակտիվության բարձրացման գործում էական նշանակություն կարող են ունենալ նաև բարոյահոգեբանական գործոնները։ Գաղտնիք չէ, որ կոլեկտիվներում դեռևս կարելի է հանդիպել մարդկանց, որոնք դժգոհ են իրենց գործից, անբարյացակամ են ընկերների նկատմամբ։ Մյուս կողմից, դեռևս ոչ բոլորի աշխատատեղերն են համապատասխանում այսօրվա պահանջներին, ինչպես նաև կան միապաղաղ բնույթի գործեր ու օպերացիաներ։ Այս ամենն իր բացասական կնիքն է դնում արտադրողականության աճի վրա, որովհետև բանվորը, իր կամքից ու ցանկությունից անկախ, հաճախ աշխատում է անտրամադիր, դանդաղ, թողարկում է խոտան արտադրանք։

Այժմ արդեն բոլորի համար պարզ է, որ բանվորի տրամադրությունը երկրորդական հարց չէ։ Եթե նա, արտադրական օպերացիան կատարելիս, ինքն իր մեջ դեռ «շարունակում» է վիճել արտադրամասի ղեկավարության, գործընկերոջ կամ ընտանիքի որևէ մի անդամի հետ, եթե նա չի կարողանում կենտրոնանալ, բնականաբար, արդյունքը ցածր կլինի։ Կուսկազմակերպությունը, տնտեսական ղեկավարությունը մշտապես հոգում են բանվորական տեղերի խելացի ու մտածված կազմակերպման մասին։ Մենք ձգտում ենք ընդօրինակել և յուրացնել աշխատանքի կազմակերպման առաջավոր փորձը, հնարավորություն ստեղծել բանվորի համար, որ քիչ էներգիա ծախսելով ու քիչ շարժումներ կատարելով ավելի մեծ արդյունքի հասնի։ Վերջին տարիներին զգալի փոփոխություններ են կատարվել եռակցողների, մամլողների, խոտանողների, կարգավորողների բանվորական տեղերում։

Հետազոտությունների հիման վրա զգալի փոփոխություններ են կատարվել և՛ արտադրամասերում, և՛ բաժիններում ու ծառայություններում։ Ձեռք են բերվել հարմարավետ կահույք, գեղեցիկ վարագույրներ, արտահագուստ, քիչ բան չի արվել բնական և արհեստական լույսի համաչափ օգտագործման, լուսային նոր ձևավորումների ասպարեզում։ Արդեն մի քանի տարի է, ինչ ձեռնարկությունում գործում են տղամարդկանց ու կանանց անվճար վարսավիրանոցներ, հարդարանքի սենյակներ։

Սոցիալական խնդիրների մեջ, ինչպես նշեց ՍՄԿԿ XXV համագումարը, չկա ավելի կարևոր խնդիր, քան սովետական մարդկանց առողջության մասին հոգալը։ Մեր ձեռնարկությունում բավականին լավ է կազմակերպված բուժսպասարկումը։ Կուսկոմիտեն պարբերաբար ինֆորմացիա է ստանում տեղերում բժշկական քննության արդյունքների վերաբերյալ և, սոցիալական բնույթի միջոցառումներ մշակելիս, անպայմանորեն հաշվի է առնում այդ արդյունքները։ Այս ասպարեզում կատարված կոմպլեքսային աշխատանքը որոշակի արդյունք է տվել. վերջին երկու տարում չի գրանցվել պրոֆեսիոնալ հիվանդության և ոչ մի դեպք։

Կոլեկտիվի անդամների բուժսպասարկումը բարձր մակարդակով կազմակերպելու գործում մեզ մեծ աջակցություն է ցույց տալիս ՀՍՍՀ առողջապահության մինիստրության սրտաբանության ինստիտուտը։ Այս հաստատության ճանաչված մասնագետները մեր կոլեկտիվի անդամների շրջանում կատարում են պրոֆիլակտիկ ուսումնասիրություններ, նրանց համար կազմակերպում կոնսուլտացիաներ, կարդում դասախոսություններ։

Մենք գործնական հետևություններ արեցինք նաև կադրերի հոսունության պատճառների վերլուծությունից։ Հոսունությունը ինքնին լուրջ պրոբլեմ է և մտածելու, խորհելու շատ առիթներ է տալիս։ Մեզ հետաքրքրում էր, թե այդ ինչպե՞ս է, որ երիտասարդների մեծ մասը արագորեն միավորվում է կոլեկտիվին, ապրում նրա կյանքով ու առօրյայով, իսկ մի մասը՝ ո՛չ, ինչո՞ւ է խանդավառ պատանին արտադրությունում մի քանի օր աշխատելուց հետո ազատման դիմում գրում։ Այս «ինչուները» դարձան մեր հետազոտությունների շարժառիթը։

Չի կարելի ասել, թե ամեն դեպքում մեզ հաջողվում է ճիշտ պատասխան ստանալ գործարանից ազատվելու ցանկություն ունեցող երիտասարդներից, սակայն նրանց հետ անկեղծ, մտերմական զրույցը հաճախ շատ բան է բացահայտում։ Մեկի համար արտադրությունը չի համապատասխանում իր պատկերացումներին, երկրորդը գտնում է, որ աշխատանքը դժվար է, հոգնեցուցիչ, մեկ ուրիշի համար վարձատրությունը ցածր է և այլն։

Ի՞նչ պետք է անել, ինչպե՞ս վարվել արտադրության այն նորեկի հետ, որն աշխատասիրություն ու կամք չի դրսևորում, ընկճվում է առաջին իսկ դժվարությունից և այդ բոլորի լուծման լավագույն միջոցը համարում է ազատման դիմումը։ Այստեղ մեծ ու պատասխանատու անելիքներ ունեն ոչ միայն կուսակցական, կոմերիտական կազմակերպությունները, այլև բրիգադավարը, վարպետը, պրոպագանդիստները, ագիտատորները, ողջ կոլեկտիվը։ Հարկավոր է անկեղծ զրույցների, հոգատարության և պահանջկոտության մթնոլորտում ներազդել մարդու վրա, դաստիարակել նրան կոլեկտիվի աշխատանքային լավագույն ավանդույթների ոգով, կենդանի փաստերով ցույց տալ այն հսկայական գործերը, որոնք ուղղված են արտադրության մարդկանց կարիքների բավարարմանը։

Ահա այդպիսի մի օրինակ. ընդամենը մեկ տարվա ստաժ ուներ նորմալ լուսավորման լամպերի հավաքման արտադրամասի մոնտաժող բանվորուհի Անուշ Մեսրոպյանը, երբ ազատման դիմում գրեց։ Բրիգադը, որի անդամն էր նա, չէր կատարում պլանային առաջադրանքները, հետևաբար, ցածր էր և վարձատրությունը։ Բացի այդ, դպրոցական նստարանին բոլորովին վերջերս հրաժեշտ տված աղջիկը դեռևս լիովին չէր պատկերացնում այն պատասխանատվությունը, որ դրվում է կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի վրա պլանային առաջադրանքների ու ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման համար։ Բանվորուհու խնդրանքը բավարարելուց առաջ նրա հետ զրույց ունեցան կոմերիտական կազմակերպության և կուսբյուրոյի քարտուղարները։ Լսվեց բրիգադավարի ինֆորմացիան։ Պարզվեց, որ պլանների թերակատարման հիմնական պատճառը աշխատանքի ոչ ճիշտ կազմակերպումն է, որը և հանգեցրել է կարգապահության թուլացմանը։ Բրիգադին օգնության հասան արտադրամասի փորձառու լամպագործները։ Գործնական մեծ աջակցություն ցույց տվեց նաև անվանի բրիգադավար Պավել Քալաշյանը։ Կուսկազմակերպությունը վերահսկեց այդ գործին, ակտիվացրեց բրիգադում տարվող գաղափարադաստիարակչական, բացատրական աշխատանքը։

Արդյունքը երկար սպասեցնել չտվեց։ Երկու-երեք ամիս անց բրիգադի դիմաց գրվեցին պլանների կատարման բարձր ցուցանիշներ, կարգավորվեց կոլեկտիվի անդամների փոխհարաբերությունը, մարդիկ սկսեցին մտածել ոչ թե գործարանից հեռանալու, այլ ստանձնած պարտավորությունները ժամկետից շուտ ու բարձր որակով կատարելու մասին, որովհետև նրանք արդեն զգացել էին միրցության ուժը։

Անհատական պլանները գերակատարեց նաև Անուշ Մեսրոպյանը և, որ քիչ կարևոր չէ, սովորեց բարձրորակ արտադրանք թողարկելու գաղտնիքը։ Նրա



համար պլանները 5—10 տոկոսով գերակատարելը դարձել է սովորական բան։ Մեկ տարի անց Մեսրոպյանը մի այլ դիմում գրեց։ Այս անգամ նա կուսկազմակերպությունից խնդրում էր իրեն ընդունել ՍՄԿԿ շարքերը որպես անդամության թեկնածու։ Տեղական սովետների վերջին ընտրությունների ժամանակ նա երկրորդ անգամ ընտրվեց շրջանային սովետի դեպուտատ։ Եվ նա այսօր միայն ժպիտով է հիշում գործարանից ազատվելու դիմումի մասին։

Արտադրության նորեկների հետ տարվող աշխատանքում, կադրերի հոսունության կրճատման գործում մեծ ներդրում ունեն վարպետ-դաստիարակները։ Կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանում այս հարցին մենք կարևոր նշանակություն ենք տալիս։ Չէ՛ որ վարպետ-դաստիարակը հոգատարության, մանկավարժական ճիշտ մոտեցման դեպքում կարող է իր սաների մեջ ոչ միայն սեր արթնացնել կոլեկտիվի, ընտրած մասնագիտության հանդեպ, այլև նրանց դարձնել ակտիվ քաղաքացիներ, որոնք պետական գործի նկատմամբ հանդես կբերեն մեծ պատասխանատվություն ու սրտացավություն։ Մեր ձեռնարկությունում քիչ չեն վարպետ-դաստիարակները՝ 137 մարդ։ Իրենց ճնշող մեծամասնությամբ նրանք արտադրության առաջավորներ են, հասարակական աշխատանքի ակտիվիստներ։ Եվ հենց նրանց վրա է կուսկազմակերպությունը հենվում՝ երիտասարդների կոմունիստական դաստիարակության կոմպլեքսային միջոցառումները մշակելիս։ Այսօր փորձառու և հմուտ վարպետ-դաստիարակի անուն են վաստակել Սվետլանա Աթայանը, Արտավազդ Համբարձումյանը, Ալեքսանդր Բորիսովը, Հմայակ Պողոսյանը, Պետրոս Չիֆլիկյանը, Ալյոշա Բեկչյանը, Սվետլանա Առաքելյանը և ուրիշներ, որոնք շատ ջանք ու եռանդ են թափել արժանի հերթափոխ պատրաստելու համար։

ՍՄԿԿ XXV համագումարը խնդիր դրեց շարունակել կանանց աշխատանքի և կենցաղի պայմանների բարելավման միջոցառումների իրականացումը։ Կանանց հետ տարվող աշխատանքը ևս մեզ համար առաջնային է։ Բավական է ասել, որ միայն էլեկտրալամպերի գործարանում կա 3.500-ից ավելի կին։ Նրանք հիմնականում ազատված են ծանր ու վնասակար պայմաններ ունեցող գործերից, գիշերային հերթափոխությունից։ Խստորեն պահպանվում են հղի և կերակրող մայրերի արտոնությունները, երեխաների համար նպաստ են ստանում բոլոր կարիքավորները։ Կանայք մեծ ուժ են մեր ձեռնարկությունում, նրանք շատ ջանքեր են գործադրում արտադրական պլանները հաջողությամբ կատարելու համար։ Կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչման համար պայքարող 6.400 աշխատողների մեծ մասը կանայք են։ «Մասնագիտության մեջ լավագույնի» կոչմանն են արժանացել տասնյակ բանվորուհիներ։

Կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանում մեծ տեղ են հատկացված բանվոր-ծառայողների կրթական մակարդակի բարձրացման, մասնագիտական գիտելիքների հարստացման հարցերին։ Դրան համապատասխան կազմակերպել ենք նոր բանվորական կադրերի պատրաստման, արտադրական-տեխնիկական, ինչպես նաև նպատակային դասընթացներ, առաջավոր փորձի փոխանակման, բանվորների և ինժեներատեխնիկական աշխատողների տնտեսագիտական ուսուցման, կոմունիստական աշխատանքի դպրոցներ, ժողովրդական համալսարան՝ ութ ֆակուլտետներով, հեռակա-միջնակարգ դպրոց։ Յուրաքանչյուր տարի հարակից մասնագիտություն է սովորում միջին հաշվով 150 մարդ։ Նույնքան մարդ էլ նոր գիտելիքներ է ձեռք բերում վարպետների որակավորման բարձրացման դպրոցում։ Ամեն տարի 1.200—1.300 բանվորներ բարձրացնում են իրենց որակավորումը տարբեր դասընթացներում։ Ձեռնարկության երկու աշխատողներ հաջողությամբ պաշտպանել են թեկնածուական դիսերտացիա, 12 մարդ, առանց արտադրությունից կտրվելու, սովորում է ասպիրանտուրայում։ Մեր նախաձեռնությամբ Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտում բացվել է «Լուսատեխնիկա» բաժինը, որը բարձրորակ համալրում է տալիս մեր գործարանին։ Այսօրվա դրությամբ ինժեներատեխնիկական աշխատողների ավելի քան 57 տոկոսն ունի բարձրագույն կրթություն և աշխատում է ըստ իր մասնագիտության։

*Կոլեկտիվի սոցիալական զարգացման յուրաքանչյուր հնգամյա պլան նախորդի օրգանական շարունակությունն է և հաջորդի սկիզբը։ Ուստի, հնգամյա պլանը պետք է լինի խիստ հիմնավորված, ելնի ռեալ վիճակից և զարգացման իրական տեմպերից՝ ըստ գլխավոր ուղղությունների։ Բայց յուրաքանչյուր պլան, որպես այդպիսին, պետք է ավելի կատարյալ ու առաջադիմական լինի իր նախորդի համեմատությամբ, լրացվի նոր, կուսակցության պահանջներից բխող դրույթներով։ Մենք հետևողական աշխատանք ենք տանում, որպեսզի կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանն արտացոլի մեր կյանքի նոր միտումներն ու երևույթները։*

*Կոլեկտիվի սոցիալական զարգացման 1976—80 թթ. հնգամյա պլանում կա նոր բաժին՝ «Անհատի կոմունիստական դաստիարակությունը և աշխատողների հասարակական ակտիվության բարձրացումը»։ Կիրականացվի գաղափարադաստիարակչական միջոցառումների ամբողջ կոմպլեքս։ Ոչ միայն զգալիորեն կավելանա դասախոսությունների, զրույցների, արտադրության առաջավորների, արվեստի գործիչների հետ հանդիպումների, սպորտային միջոցառումների, կոլեկտիվ դիտումների թիվը, այլև կբարձրանա դրանց արդյունավետությունը, կկատարելագործվեն դաստիարակչական աշխատանքի ձևերն ու մեթոդները։*

*Կոլեկտիվի անդամների գաղափարաքաղաքական արդյունավետ դաստիարակությունը, աշխատանքային առողջ մթնոլորտի ապահովումը պլանային առաջադրանքների և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման լավագույն երաշխիքն են։ Միայն այն դեպքում կարելի է հասնել նշանակալի հաջողությունների, երբ կոլեկտիվը մարտունակ է, բարձր է նրա բարոյական ոգին։ Այս առումով մեր կուսկազմակերպությունը որոշակի փորձ ունի։ Ղեկավարելով կոլեկտիվի արտադրատնտեսական գործունեությունը, բացատրական-դաստիարակչական աշխատանքին հաղորդելով կոնկրետություն ու նպատակայնություն՝ կուսկազմակերպությանը հաջողվել է բարձրացնել մարդկանց պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։ Եվ պատահական չէ, որ մեր կոլեկտիվը իններորդ և տասներորդ հնգամյակների բոլոր եռամսյակներում իր ձեռքում է պահում ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրության և ճյուղային արհմիության Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը, իսկ չորս անգամ անընդմեջ, տարվա արդյունքներով, արժանացել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։*

*Երբ խոսում ենք սոցիալական զարգացման հեռանկարների ու դրանց հիմնավորվածության մասին, մենք, բնականաբար, նկատի ունենք ոչ միայն տնտեսական, այլև բարոյական գործոնները։ 1980 թ. միավորման արտադրության ծավալի աճը, 1975 թվականի համեմատությամբ, կազմելու է 160,3 տոկոս, աճի տարեկան միջին տեմպերը՝ 9,9 տոկոս։ Արտադրության ծավալի աճի 85,4 տոկոսը կապահովվի ի հաշիվ աշխատանքի արտադրողականության բարձրացման։ Ինչ խոսք, տեխնիկատնտեսական այս ցուցանիշները հիմնականում ձեռք կբերվեն արտադրության հետագա ինտենսիֆիկացման ու կոոպերացման ճանապարհով, բայց չպետք է մոռանալ, որ այդ բոլորը կատարում են մարդիկ։ Ուստի, որքան լարված են պլանները, այնքան ավելի հետևողական պետք է լինի կոլեկտիվի սոցիալական զարգացման նպատակով տարվող աշխատանքը։*

*Կոլեկտիվի սոցիալական զարգացման ասպարեզում էլեկտրալամպերի գործարանում տարվող աշխատանքը «Հայէլեկտրալույս» արտադրական միավորման սոցիալական զարգացման ընդհանուր պլանի մեկ օղակն է միայն։ Միավորման կուսկոմիտեն, դիրեկցիայի և արհկոմի հետ միասին, որոշակի աշխատանք են տանում, որպեսզի այդ պլանը համամասնորեն իրագործվի նաև միավորման մյուս ձեռնարկություններում։ Եվ պետք է նշել, որ որոշակի արդյունքներ են ձեռք բերվել նաև մի շարք առանձին ձեռնարկություններում։ Ընդամենը մեկ տասնամյակ է, ինչ Սևանի շրջանի Գագարին ավանում կազմակերպվել է լուսատեխնիկական բյուրեղապակու գործարան։ Շրջակա գյուղերի*



*բնակիչներից կազմավորված կոլեկտիվը, որը առնչություն չուներ ոչ միայն ապակեգործի, այլև առհասարակ բանվորական մասնագիտությունների հետ, այսօր թողարկում է լայն ճանաչման և բարձր գնահատականի արժանացած լուսատեխնիկական բյուրեղապակի։ Գործարանը իր կայուն և անընդհատ աճող տեխնիկատնտեսական ցուցանիշներով դարձել է միավորման լավագույն ձեռնարկություններից մեկը։ Կոլեկտիվի անդամների համար ստեղծվել են աշխատանքային, բնակարանային, կուլտուր-կենցաղային նորմալ պայմաններ։*

*Նույնը կարելի է ասել նաև Մարտունու, Սիսիանի գործարանների մասին։ Բանվորական ավանդույթներ ու մասնագետ կադրեր չունեցող այդ շրջաններում գլխավոր գործարանի կոլեկտիվի օգնությամբ ստեղծվել են ժամանակակից ձեռնարկություններ, աշխատանքային, բնակարանային, կուլտուր-կենցաղային լավ պայմաններ, մասնագիտական բարձր որակավորում ունեցող կոլեկտիվներ, որոնք հաջողությամբ յուրացրել են ժամանակակից բարդ սարքավորումները և թողարկում են բարձրորակ արտադրանք։*

*Կիրովականը, իհարկե, բանվորական լավ ավանդույթներ ունեցող քաղաք է։ Սակայն այստեղ ևս լուսատեխնիկական գործարանը իր կյանքն սկսեց, ինչպես ասում են, զրոյական ցիկլից։ Իսկ այսօր այն իր ժամանակակից մասնաշենքերով, բնակելի թաղամասով, կուլտուր-կենցաղային օբյեկտներով համամիութենական ճանաչման արժանացած լուսատեխնիկական իրերի մի խոշոր արտադրական միավոր է։*

*Նշված օրինակները ցույց են տալիս, որ հասարակական զարգացման ներկա փուլում արտադրական կոլեկտիվների սոցիալ-տնտեսական գործունեության նկատմամբ պլանավորված մոտեցումը, հատկապես արտադրամիավորումների պայմաններում, հնարավորություն է տալիս առավել մեծ արդյունքների հասնել և՛ պետական պլանների կատարման, և՛ աշխատավորների կենսապայմանների բարելավման գործում։*

---

Էկոնոմիկայի հարցեր

# ԱՇԽԱՏԱՆՔԻ ՈՐԱԿԸ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ

(«ՄԱՍԻՍ» ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՄԻԱՎՈՐՄԱՆ ՓՈՐՁԻՑ)

**Ե. Լ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի թեթև և սննդի արդյունա-
բերության բաժնի վարիչի տեղակալ

*ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԿԱՐՄԻՐ ԴՐՈՇԻ շքանշանակիր Երևա-
նի «Մասիս» կոշիկի արտադրամիավորման կոլեկտի-
վը, հետևողականորեն կենսագործելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումնե-
րը, զգալիորեն բարձրացրել է արտադրության արդյունավետությունը և ար-
տադրանքի որակը: Միավորման կազմում են կոշիկի մասնագիտացված 14
ֆաբրիկա, որոնք ներկայումս թողարկում են հանրապետությունում արտա-
դրվող ամբողջ կոշկեղենի ավելի քան 98 տոկոսը: 1975 թվականի 9,7 միլիոն
զույգ կոշիկի դիմաց, 1978-ին արտադրվել է 11,8 մլն զույգ: Համախառն ար-
տադրանքի աճը, երեք տարվա համար նախատեսված 8,4 տոկոսի փոխարեն,
փաստորեն կազմել է 28,4 տոկոս:*

*Արտադրամիավորումը՝ նախկին «Մասիս» ֆիրման, կազմավորվել է տաս-
ներորդ հնգամյակի սկզբին: Արտադրության կառավարման ու կազմակերպ-
ման լավագույն սխեմաների տարածմամբ ու ներդրմամբ այժմ այն երկրի
առաջավոր ձեռնարկություններից մեկն է:*

*Միավորման կազմակերպումը հնարավորություն ընձեռեց արագ տեմպե-
րով ներդնելու նոր տեխնիկան ու տեխնոլոգիան, բարելավելու աշխատանքի
կազմակերպումը և դրա շնորհիվ ընդլայնելու և կատարելագործելու կոշիկի
արտադրությունը: Վերջին երեք տարում ավարտվել է չորս ֆաբրիկաների վերա-
կառուցումը, որոնց կարողություններն ավելացել են 1,1 մլն զույգ կոշիկով:
Միավորման գլխավոր ֆաբրիկայում ստեղծվել է մեխանիկական հզոր բազա:
Միավորման ծառայությունների ուժերով և միջոցներով մշակվել ու պատ-
րաստվել են կոնվեյերային գծերի նոր կոնստրուկցիաներ՝ ճոպանային հաղոր-
դակներով, այդ թվում՝ չորս ուղղահայաց-փակ կոնվեյեր կոշիկի տակի դե-
տալները մշակելու, երկու, երեք և չորսհարկանի կոնվեյերներ՝ կարի արտա-
դրամասերի համար: Այդ կոնվեյերները նորություն էին մեր երկրի կոշիկի
արդյունաբերության մեջ: Դրանք աշխատում են անաղմուկ, հուսալի են և շըղ-
թայական կոնվեյերների համեմատությամբ՝ ավելի էժան: Ձեռնարկություն-
ների 68 կոնվեյերներից 50-ը պատրաստված է տեղում:*

*Միավորումն ապահովված է բանվորական, ինժեներատեխնիկական և
ծառայողների որակյալ կադրերով, որոնք ակտիվորեն ծավալել են սոցմրցու-
թյուն՝ տասներորդ հնգամյակի առաջադրանքների կատարման ու գերակա-
տարման, արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների ներ-
դրման, աշխատանքի արտադրողականության բարձրացման համար:*

*Տասներորդ հնգամյակի սկզբում, միավորման ստեղծումից հետո, տնտե-
սական ղեկավարների, կուսկազմակերպության առջև անմիջապես ծառացան*



*այնպիսի հարցեր, որոնք կապված էին թողարկվող կոշիկի որակի զգալի բա-
րելավման և արտադրության կառավարման կատարելագործման հետ: Իննե-
րորդ հնգամյակի տնտեսական գործունեության վերլուծությունը ցույց տվեց,
որ աշխատանքի կազմակերպման և արտադրանքի որակի կառավարման գոր-
ծում կային լուրջ թերացումներ և չօգտագործված ռեզերվներ:*

*Արտադրության արդյունավետությունը բարձրացնելու, կոշիկի տեսակա-
նին ու որակը արմատապես բարելավելու համար միավորման ղեկավարությու-
նը, կուսկազմակերպության հետ միասին, իր գործունեության նպատակը հա-
մարեց՝ ապահովել հումք մատակարարող բոլոր ֆաբրիկաների և առևտրական
կազմակերպությունների ներդաշնակ կապը, բարձրացնել աշխատանքի կազ-
մակերպման և տնտեսական ողջ գործունեության մակարդակը, դրա համար
մոբիլիզացնելով ինժեներատեխնիկական աշխատողների ջանքերը:*

*Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցության քաղկոմի և շրջկոմնե-
րի, թեթև արդյունաբերության մինիստրության հետ միասին, վերանայեց միա-
վորման ղեկավար կազմը՝ այդ գործը հանձնարարելով արտադրության ու
էկոնոմիկայի լավատեղյակ, աշխատանքի անհրաժեշտ փորձ ունեցող մաս-
նագետների:*

*Կուսակցական կազմակերպությունները, միավորման տնտեսական ղեկա-
վարների հետ մեկտեղ, հնգամյակի սկզբից իսկ ձեռնարկեցին պլանաչափ աշ-
խատանք՝ արտադրության արդյունավետության բարձրացման և աշխատան-
քի որակի բարելավման նպատակով:*

*Հաշվի առնելով տասներորդ հնգամյակի առաջադրանքները, 1976—1980
թվականների համար ներկայացված միջոցառումների հիման վրա կազմվեց
«Մասիս» արտադրամիավորման տեխնիկական առաջընթացի, տնտեսական ու
սոցիալական զարգացման կոմպլեքսային պլան: Դրա մշակմանը մասնակցե-
ցին ստեղծագործաբար տրամադրված շատ ինժեներներ ու տեխնիկներ, նո-
րարարներ ու արտադրության առաջավորներ և նրանց միջոցով այդ պլանը
մասսայականացվեց միավորման բազմահազարանոց կոլեկտիվում: Մեծ է
միավորման տնտեսական ու սոցիալական զարգացման կոմպլեքսային պլանի
դերը կոլեկտիվի արտադրական ու հասարակական ամբողջ կյանքի կառավար-
ման ու ձևավորման գործում: Այն բովանդակում է տեխնիկական, տնտեսա-
կան, կազմակերպական ու սոցիալական կարգի մի շարք միջոցառումներ և
նպատակն է արտադրության տեխնիկական մակարդակի հետագա բարձրա-
ցումը:*

*Կոմպլեքսային պլանը բաղկացած է 8 բաժնից և նախատեսում է 322 մի-
ջոցառում: Դրանց կենսագործումից հետո աշխատանքի արտադրողականու-
թյան աճը կկազմի 18,6 տոկոս: Բացի այդ, կոմպլեքսային պլանն ունի սո-
ցիալական մեծ նշանակություն, նպաստում է աշխատանքային կոլեկտիվների
անդամների ակտիվացմանը, մտավոր աշխատանքի զարգացմանը: Կոմպլեք-
սային պլանի բոլոր միջոցառումները կապված են միմյանց և ապահովում են
միավորման ներդաշնակ զարգացումը:*

*Կուսակցական կազմակերպությունն անդադրում վերահսկում է նշված
միջոցառումների կատարման ընթացքը, ձգտում դրանք կատարել ժամանակին
և հետևողականորեն, ուստի և այդ պլանը դարձել է գործունեության, բարե-
խիղճ աշխատանքի, յուրաքանչյուր ինժեների, տեխնիկի, ծառայողի, բանվորի
պատասխանատվության բարձրացման ծրագիր:*

*Կոշիկի իրացումը մանրածախ գներով 1975 թվականի 98,1 մլն ռուբլուց
1978 թվականին հասել է 126,2 մլն-ի կամ աճել 28,6 տոկոսով: Արտադրողա-
կանությունը մեկ աշխատողի հաշվով այդ ժամանակամիջոցում 7 հազարից
հասել է 7,8 հազար ռուբլու: Հաշվեկշռային եկամուտը 4,7 մլն-ից հասել է 6,9
մլն-ի, այսինքն՝ աճել է 46,8 տոկոսով:*

*Բարձրորակ և մոդելային կոշիկի արտադրության ծավալը 1976—1980 թթ.
մեծացնելու նպատակով, բացի տեխնիկական վերազինումից, վերակառուց-
վեցին և ընդլայնվեցին կոշիկի ֆաբրիկաները, ավելացվեցին դրանց կարողու-
թյունները: Կարևոր է, որ ճյուղի ձեռնարկությունների վերազինումը հնարա-*

վորություն ընձեռեց կազմակերպելու բարդ մոդելային կոշիկի թողարկումը։ Դրա շնորհիվ խիստ մեծացավ ապրանքային արտադրության ծավալը՝ 1975 թվականի 56,2 մլն ռուբլու փոխարեն 1978 թվականին հասնելով 72,4 մլն-ի կամ աճեց 28,8 տոկոսով։

Կուսակցական կազմակերպությունը վերջին երեք տարում հատուկ հոգատարություն է ցուցաբերել տեսականու նորացման նկատմամբ։ Այժմ այդ հարցին մեծ ուշադրություն է հատկացվում բոլոր ձեռնարկություններում։ Կոշիկի տեսականու մշակմանն ակտիվ մասնակցում են ո՛չ միայն մոդելագործները, այլև ինժեներատեխնիկական աշխատողները, ռացիոնալիզատորները, նորարարները, արտադրության առաջավորները։ Դրան նպաստում է նաև միավորման աշխատողների և առևտրական կազմակերպությունների փոխհարաբերությունների բարելավումը։

Անցած երեք տարում մեծ ուշադրություն է հատկացվել մանկական և դեռահասների կոշիկի տեսականու մշակմանն ու ստեղծմանը։ Ներկայումս միավորման ձեռնարկություններում մանկական կոշիկի արտադրությունը կազմում է 43, կանացի կոշիկինը՝ 29, տղամարդունը՝ 28 տոկոս։ Կոշիկի տեսականու ընդլայնման ոլորտում դրական ազդեցություն ունեցավ արտադրանքի պլանաչափ և սիստեմատիկ ատեստավորումն ըստ որակի կատեգորիաների։ Ներկայումս կոշիկի 26,3 տոկոսը թողարկվում է բարձր կարգի, 73,7 տոկոսը՝ առաջին կարգի։

Պետական որականիշով արտադրանք թողարկելու գործում լավագույն արդյունքների հասնելու համար «Մասիս» միավորմանը հանձնվել է ՀԱՄԿԽ-ի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ստանդարտների պետական կոմիտեի «որակի դիպլոմ»։

Միավորման ձեռնարկությունների արտադրած կոշիկը լայն ճանաչման է արժանացել մեր անծայրածիր երկրի բնակչության շրջանում։ Այն առաքվում է ավելի քան 80 առևտրական բազաների։

«Մասիս» միավորման կուսկազմակերպությունը հետևողականորեն շարունակում է արտադրության մասնագիտացման աշխատանքը, այն դիտելով որպես արտադրության հետագա կատարելագործման և արտադրանքի տեխնիկական մակարդակի բարձրացման հիմնական պայմաններից մեկը։

Հաշվի առնելով միավորման հաջողությունները որակի բարձրացման և տեսականու բարելավման գործում, ինչպես նաև հանրապետությունում կոշիկի արտադրության հետագա կենտրոնացման ու մասնագիտացման նպատակով, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջարկությամբ 1978 թվականին Հայկական ՍՍՀ տեղական արդյունաբերության մինիստրության սիստեմից կոշիկի երկու ֆաբրիկա հանձնվեց «Մասիս» միավորմանը։

Դեռևս իններորդ հնգամյակի վերջում միավորման կոլեկտիվը, կուսկազմակերպության ղեկավարությամբ, ուսումնասիրելով և ընդհանրացնելով արտադրության անթերի թողարկման սարատովյան մեթոդը, Տիրասպոլի կարի ֆաբրիկայի կոլեկտիվի և Վոլգայի ավտոմոբիլային գործարանի աշխատանքի փորձը, ինչպես նաև որակի կառավարման լվովյան սիստեմը, ձեռնամուխ եղավ արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմի մշակմանը։ Ստեղծվեց որակի կառավարման բաժին։

Որակի կառավարման կոմպլեքսային սիստեմի ներդրման առաջին փուլը ձեռնարկությունների անցումն էր արտադրանքի անթերի թողարկման մեթոդին։ Այդ սիստեմի ելակետային դրույթն է՝ բանվորների, վարպետների, արտադրամասերի ղեկավարների և ինժեներատեխնիկական աշխատողների անձնական պատասխանատվությունն արտադրանքի որակի համար։ Ստեղծվեցին թերությունների անհատական հաշվառման և կատարման որակի վերահսկողության հատուկ ամփոփագրեր։

Բանվորների շրջանում ծավալվեց շարժում՝ անձնական դրոշմ ունենալուց օգտվելու, արտադրանքն առանց տեխնիկական վերահսկողության բաժնի ու



որակի երաշխիքով հանձնելու իրավունքի համար։ Այժմ միավորման շուրջ 100 բանվորներ իրավունք են ստացել աշխատելու անձնական դրոշմով։

Միավորման ֆաբրիկաներում լուրջ ուշադրություն է հատկացվում բարոյական և նյութական խթանմանը։ Մշակվել է խրախուսման հատուկ սիստեմ, շնորհվում են կոչումներ, սահմանվել է «Որակի գերազանցիկ» հուշադրոշը, «Ոսկեձեռ վարպետ» կոչումը, տարիֆային դրույքին լրացուցիչ 15 տոկոս վարձատրություն է տրվում նրանց, ովքեր աշխատում են անձնական դրոշմով։ Յուրաքանչյուր արտադրամաս ունի որակի խորհուրդ, որտեղ ընդգրկված են նաև կուսկազմակերպությունների կողմից երաշխավորված ներկայացուցիչներ։ Յուրաքանչյուր արտադրամասի որակյալ աշխատանքը որոշվում է աշխատանքի որակի գործակցով։

Որակի կառավարման գործում մեծ է միավորման կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների դերը, նրանք ադմինիստրացիայի գործունեությունը կոորդինացնում են ժողովներում արված հանձնարարականներին, առաջարկություններին և ցանկություններին համապատասխան։

Կուսակցական կազմակերպությունը սիստեմատիկաբար անց է կացնում տեսական սեմինարներ արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմի հիմունքների և ստանդարտների ներդրման վերաբերյալ։ Շատ ջանքեր են թափվում աշխատանքի արդյունավետության և որակի բարձրացման գործում երիտասարդությանը ներգրավելու համար։ Տիրասպոլցիների օրինակով միավորումը կազմակերպել է գերազանց որակի 10 համընդգրկող բրիգադ. ձևարարական արտադրամասում ութ կոմերիտականների վստահված է «Կոմերիտական երաշխիքի» դրոշմը։ Միավորման ֆաբրիկաներում տղամարդու կոշիկի արտադրության լավագույն բրիգադը, Գ. Գաբրիելյանի ղեկավարությամբ, առաջին տեսակի կոշիկի թողարկումը հասցրել է 93 տոկոսի։ Բրիգադը հաղթող է ճանաչվել համամիութենական սոցմրցությունում, նվաճելով ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը, և գրանցվել է «ՀամԼԿԵՄ Կենտկոմի կոմերիտական փառքի» տարեգրքում։

Արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմի հետագա մշակումների դրական արդյունքը եղան որակի նշանով և «Ն» ինդեքսով արտադրանքի տեսակարար կշռի մեծացումը, առաջին տեսակի արտադրանքի թողարկման աճը, վնասապահանջների կրճատումը։ Այդ սիստեմի ներդրումից ստացված տնտեսական արդյունավետությունը տարեկան 250 հազար ռուբլի է։ Վերջնականապես մշակվել և ներդրվել են բարձրորակ աշխատանքի բարոյական ու նյութական խթանման կատարելագործված մեթոդներ։

Կոմպլեքսային պլանով տասներորդ հնգամյակում նախատեսված է արտադրության մեքենայացման և ավտոմատացման մեծ ծրագիր՝ կազմված 74 միջոցառումից։ Հիմնականում այն կատարվում է այսպես. երեք տարում ստացվել և տեղակայվել են ավելի քան 600 միավոր տեխնոլոգիական նոր սարքավորում, ավելի քան 30 միավոր մեքենա և հարմարանք, որոնք մոդեռնացվել կամ պատրաստվել են տեղում։

Ֆիզիկապես ու բարոյապես հնացած սարքավորումների փոխարեն նոր, կատարելագործված սարքավորումների ներդրումը, հոսքերի կոմպլեկտավորումը, ինչպես նաև նոր մեքենաների և հարմարանքների մոդեռնացումն ու ստեղծումը հնարավորություն ընձեռեցին զգալիորեն բարելավելու արտադրանքի որակը և փոքր-ինչ բարձրացնելու մեքենայացման աստիճանը, որը միավորման ձեռնարկություններում հասնում է 55,7 տոկոսի։

Միավորման ֆաբրիկաներում լրիվին կատարվում է արտադրության մեքենայացման և ավտոմատացման կոմպլեքսային պլանը։ Սակայն չի կարելի չնշել, որ սարքավորումների պահանջը բավարարվում է ոչ ամբողջությամբ, իսկ մատակարարող գործարանները ոչ միշտ են կատարում իրենց պայմանագրային պարտավորությունները։ Բոլոր ֆաբրիկաներում բարելավվել են բանվորների աշխատանքի պայմանները՝ կատարելագործվել են արտադրամասերի լուսավորությունը, արտաձծման և օդափոխման սիստեմները, նվազել է ար-

տադրական աղմուկը, բարելավվել է արտադրամասերի ու աշխատամասերի ինտերիերը։

Միավորման ձեռնարկություններում ծավալվել են բանվորական վարպետության՝ ձևարարների, կարողների, ներբան կպցնողների մրցույթներ։ Կազմակերպվել են տեխնիկական ֆիլմերի դիտումներ և դասախոսություններ։

Միավորման արդյունաբերական-արտադրական անձնակազմի կառուցվածքում բանվորների տեսակարար կշիռը ներկայումս կազմում է 89,4, ինժեներատեխնիկական աշխատողներինը՝ 6,3, ծառայողներինը՝ 3,5 տոկոս։

Գործող ձեռնարկությունների վերակառուցման և տեխնիկական վերազինման աշխատանքների շնորհիվ 1977 թվականին, 1975 թ. համեմատ, մեկ աշխատողի հաշվով 19,1 տոկոսով աճել է ֆոնդազինվածությունը և բարենպաստ պայմաններ են ստեղծվել աշխատանքի արտադրողականության աճի համար։ Տասներորդ հնգամյակի երեք տարում միջին աշխատավարձը բարձրացել է 10,1, իսկ աշխատանքի արտադրողականությունը՝ 12,2 տոկոսով, որը միավորման ողջ աշխատանքի հաջողության արտահայտությունն է։

Հատուկ ուշադրություն է հատկացվում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Այսպես, արտադրության ծավալի 28,4 տոկոս աճի պայմաններում արդյունաբերական-արտադրական անձնակազմն ավելացել է միայն 14,4 տոկոսով։ Դա նշանակում է, որ արտադրածավալի աճի զգալի մասը ձեռք է բերվել աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։

1976—1980 թթ. սոցիալական զարգացման կոմպլեքսային պլանով նախատեսված է մինչև հնգամյակի վերջը արտադրանքի տեխնիկապես հիմնավորված նորմաների տեսակարար կշիռը հասցնել 80 տոկոսի։

Միավորման կոլեկտիվը մրցում է Թբիլիսիի «Իսանի», Բաքվի № 1, Կիևի՝ Ուկրաինայի կոմերիտմիության տասնամյակի անվան կոշիկի ֆաբրիկաների, Երևանի Ստ. Շահումյանի անվան կաշվի արտադրամիավորման և կենտրոնական հանրախանութի կոլեկտիվների հետ։

«Պատրաստված է գերազանց, վաճառված է գերազանց» նշանաբանով 1978 թվականին սոցմրցման պայմանագիր կնքվեց Երևանի Լենինյան շրջանի հանրախանութի հետ։

Միավորման ներսում սոցմրցություն է ծավալվել ֆաբրիկաների կոլեկտիվների միջև։ Մշակվել են մրցության կանոններն ու պայմանները, ստեղծվել է հանձնաժողով, որն ամեն եռամսյակ ամփոփում է արդյունքները։

Կոլեկտիվի համար «վարքագծի նորմա» է դարձել միութենական սոցմրցության մեջ բարձրագույն պարգևների արժանանալը։ 1976—1978 թթ. այն առանց բացառության բոլոր եռամսյակներին նվաճել է ՍՍՀՄ թեթև արդյունաբերության մինիստրության և ճյուղային արհմիության Կենտկոմի փոխանցիկ դրոշը։ Կոշկագործների մեծ հաջողությունների մասին է վկայում այն, որ նրանք տասներորդ հնգամյակի անցած երեք տարիներին անընդմեջ արժանացել են սոցիալիստական մրցության մեջ հաղթող կոլեկտիվների համար սահմանված բարձրագույն պարգևին՝ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։ Այդ կոլեկտիվի անունը գրանցվել է ՍՍՀՄ ժողտնտեսության նվաճումների ցուցահանդեսի համամիութենական պատվո տախտակին։ Կոմունիստական աշխատանքի համար ծավալված շարժման մեջ ընդգրկված է միավորման բոլոր բանվորների 43 տոկոսը։

Միավորման կոլեկտիվի շրջանում մեծ հավանության են արժանացել մոսկվացիների «Բանվորական նախաձեռնությանը՝ ինժեներական աջակցություն», «Սոցիալիստական պարտավորություններին՝ ինժեներական ապահովում» նախաձեռնությունները։ 1977 թվականին ստեղծվել է սոցմրցության հասարակական խորհուրդ գլխավոր դիրեկտորի՝ որակի գծով տեղակալի նախագահությամբ։ Աշխատանքի գիտական կազմակերպման բաժնին կից ստեղծվել է սոցմրցության սեկտոր։ Սոցիալիստական մրցության խորհրդի



ղեկավարությամբ մշակվել է սոցմրցման կազմակերպման հետագա կատարելագործման միջոցառումների կոմպլեքսային պլան։

Միավորումն ունի 577 ինժեներատեխնիկական աշխատող։ Սրանցից 530-ը, այդ թվում ձեռնարկությունների բոլոր դիրեկտորներն ու գլխավոր ինժեներները, ունեն ստեղծագործական պլաններ։ Անձնական ստեղծագործական պլանների կատարման, հասարակական կյանքին ու նորարարական աշխատանքներին մասնակցելու մրցույթի արդյունքների համար ամեն եռամսյակ շնորհվում են մրցանակներ։

Վերջին տարիներս մեծ աշխատանք է տարվել նյութական խթանման սիստեմի կատարելագործման համար։ Ներկայումս միավորման ներսում մշակվել և գործում է ութ կանոնադրություն բանվորների, ինժեներատեխնիկական աշխատողների և ծառայողների պարգևատրման կարգի ու պայմանների վերաբերյալ։ Ավելացել է պարգևատրման ենթակա բանվորների թիվը, բարձրացվել է լարված պլաններ ունեցող և բարձրորակ արտադրանք տվող բանվորների պարգևատրման չափը։ Գլխավոր ֆաբրիկայի 7 խմբերում բանվորների 96 տոկոսն աշխատում է արտադրանքի ճյուղային նորմաներով, որտեղ պարգևատրումը սահմանված է աշխատավարձի 40 տոկոսի չափով։

Կոմպլեքսային պլանի 4—6 բաժիններում բազմաթիվ միջոցառումներ են նախատեսված աշխատանքային կարգապահության ամրապնդման, բանվորական կադրերի պատրաստման, բանվորների, ինժեներատեխնիկական աշխատողների և ծառայողների հանրակրթական ու կուլտուրական մակարդակի բարձրացման, աշխատավորության աշխատանքային պայմանների բարելավման և առողջության պահպանման, նրանց բարեկեցության բարձրացման վերաբերյալ։

Անցած երեք տարում միավորման կուսկազմակերպությունն աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու նպատակով և նախատեսված պլանի համաձայն անդուլ աշխատանք է ծավալել կոլեկտիվի անդամներին հայրենասիրության և սեփական ձեռնարկության վերընթացի համար հպարտության ոգով դաստիարակելու նպատակով. լայնորեն պրոպագանդվում է արտադրության առաջավոր բանվորների և նորարարների փորձը, անց են կացվում աշխատանքային փառքին նվիրված թեմատիկ երեկոներ և հանդիպումներ։ Նոր բանվորներն աշխատանքի են ընդունվում միայն արտադրությանն ու աշխատատեղին, կոլեկտիվի ավանդույթներին ծանոթանալուց հետո։ Սիստեմատիկաբար անցկացվում են զրույցներ՝ «Աշխատանքի սոցիալիստական կարգապահության դաստիարակումը» թեմայով։ Լայնորեն և ակտիվորեն է կազմակերպված նվաճումների ցուցադրումը, բոլոր արտադրամասերն ունեն ցուցադրական ագիտացիայի նպատակային անկյուններ։ Կազմակերպվում են դասախոսություններ, անց են կացվում բանավեճեր, որտեղ քննարկվում են գեղարվեստական գործեր։ Հանդիպումներ են լինում աշխատանքի և Հայրենական պատերազմի վետերանների, գիտնականների, արտիստների, կոշիկի արտադրության մասնագետների և միավորման ստորաբաժանումների ղեկավարների հետ։ Առավել գիտակից, բանվորների կողմից հարգված աշխատողներից ստեղծվում են դաստիարակների խմբեր աշխատանքային կոլեկտիվի երիտասարդ անդամներին ուսուցելու համար։ Ակտիվորեն է աշխատում երիտասարդ մասնագետների խորհուրդը։ Ղեկավար կադրերի և ինժեներատեխնիկական աշխատողների պատրաստման և որակավորման բարձրացման ծրագրում նախատեսված են բանվորներին գիտակցական կարգապահությամբ դաստիարակելու և աշխատանքային կայուն կոլեկտիվներ ստեղծելու հատուկ պարապմունքներ և մեթոդներ։

Ազատված բանվորներին փոխարինելու համար լայն աշխատանք է տարվում երիտասարդ նոր կադրեր պատրաստելու և վերապատրաստելու աշխատանքային-տեխնիկական դասընթացների միջոցով, որոնցում ընդգրկված է շուրջ 3.000 մարդ։ Գլխավոր ֆաբրիկայում գործում է բանվոր երիտասարդության հանրակրթական երեկոյան դպրոց, շատ բանվորներ սովորում են տեխնիկումներում և բուհերում։

Միավորման ֆաբրիկաների հասարակական ու տեխնիկական կյանքին ակտիվ մասնակցում են ինժեներատեխնիկական աշխատողները, արտադրության առաջավորներն ու նորարարները, շատ բանվորներ։ Շնորհիվ այդ ամենի, տեխնիկական կարևոր շատ հարցեր լուծվում են բարձր մակարդակով, հաջողությամբ է ընթանում միավորման ֆաբրիկաների տեխնիկական վերազինումը։

Կոմպլեքսային պլանով նախատեսված ռացիոնալիզացման ցուցանիշները ո՛չ միայն կատարվել, այլև զգալիորեն գերակատարվել են։ Տարեցտարի աճում է ռացիոնալիզատորների թիվը և այժմ հասնում է 500—600 մարդու. ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրման շնորհիվ ստացվել է ավելի քան մեկ միլիոն ռուբլու տնտեսական արդյունք։

Հատուկ ուշադրություն է հատկացվում բանվորների բարեկեցության բարձրացմանը և այդ նպատակով ծախսվում է տնտեսական խթանման ֆոնդի զգալի մասը։ Սակայն չի կարելի չնշել, որ սեփական բնակարանային ֆոնդի բացակայության և Հայկական ՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության կողմից բնակտարածության անբավարար հատկացման պատճառով, դեռևս մեծ է բնակտարածության կարիք ունեցող բանվորների թիվը։

Միավորման հասարակական-քաղաքական աշխատանքներում ընդգրկված է բոլոր բանվորների 40 տոկոսը, նրանցից յուրաքանչյուրը կատարում է հասարակական որոշակի հանձնարարություն։ Կոմունիստների՝ միավորման մարտական ավանգարդի թիվը հասնում է 800-ի, կոմերիտականներինը՝ 2.550-ի։ Արհմիութենական ակտիվում՝ ձեռնարկությունների գործարհկոմներում և արհմիութենական տարբեր հանձնաժողովներում ընդգրկված է 2.360 մարդ։

Կուսակցական կազմակերպությունն անխոնջ աշխատանք է ծավալում քաղաքական լուսավորության սիստեմի կատարելագործման և աշխատողներին խոր գաղափարայնությամբ, համոզվածությամբ և սովետական հայրենասիրությամբ տոգորելու գործում։ Կուսակցական և կոմերիտական քաղաքական ուսուցման ցանցը, ինչպես նաև պրոպագանդայի և ագիտացիայի բոլոր ձևերը ծառայում են մարքս-լենինյան տեսության հիմունքների, ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների խոր ուսումնասիրությանը, արտադրության արդյունավետության և ողջ աշխատանքի որակի բարձրացմանը։

Միավորման բոլոր ձեռնարկություններում կուսակցական ազդեցությունն ուժեղացնելու նպատակով Հայաստանի կոմկուսի Կենտկոմը որոշեց ֆաբրիկաների երևանյան կուսկազմակերպությունները միավորել մեկ միասնական կազմակերպության մեջ՝ միավորման կուսկոմիտեի գլխավորությամբ։ Դա կուսկոմիտեին հնարավորություն կընձեռի կոորդինացնելու բոլոր կոմունիստների աշխատանքը, նրանց ուշադրությունը բևեռելու կադրերի դաստիարակության, կազմակերպական ու քաղաքական աշխատանքի բարելավման հետ կապված ընդհանուր հարցերի լուծմանը։

«Մասիս» կոշիկի արտադրամիավորման կուսկազմակերպության աշխատանքի փորձն ապացուցում է, որ տնտեսական ու սոցիալական զարգացման կոմպլեքսային պլանը մոբիլիզացնող մեծ նշանակություն ունի արտադրության համակողմանի զարգացման, դրա արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վերաբերյալ ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների իրականացման գործում։

---

# ՀԵՏԵՎՈՂԱԿԱՆՈՐԵՆ ԱՐՄԱՏԱՎՈՐԵԼ ԽՆԱՅՈՂՈՒԹՅԱՆ ՌԵԺԻՄԸ

**Մ. Ց. ՄԿՐՏՉՅԱՆ**

Մեր ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ տնտեսական ստրատեգիայի նպատակը եղել և մնում է ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացումը։ Իսկ այդ խնդրի լուծման գործում չափազանց կարևոր է նաև խնայողության ռեժիմի անշեղ կիրառումը։ «Ինչքան էլ որ մեծանա մեր հասարակության հարստությունը,— ՍՄԿԿ XXV համագումարում ասաց Լ. Ի. Բրեժնևը,— խստագույն տնտեսումն ու խնայողությունը մնում են ժողովրդական տնտեսության զարգացման, ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևորագույն պայմանը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 67)։

Նյութական ու ֆինանսական միջոցների խնայողաբար օգտագործումը սոցիալիստական տնտեսավարման բնորոշ հատկանիշներից է։ Ահա թե ինչու կուսակցության XXV համագումարը պահանջեց տնտեսական ղեկավարներից ու կուսակցական կազմակերպություններից՝ ճիշտ հաշվի առնել և արդյունավետ օգտագործել յուրաքանչյուր ռուբլին, աշխատանքի յուրաքանչյուր ժամը, արտադրանքի յուրաքանչյուր տոննան, մինչև վերջ արմատախիլ անել անտնտեսվարությունն ու թափթփվածությունը (տե՛ս նույն տեղը)։

Համագումարի առաջադրած այս պահանջները գործողության ծրագիր են նաև ՀԿԿ Լենինյան շրջկոմի և շրջանի սկզբնական կուսկազմակերպությունների համար։ Նրանք քանիցս անդրադարձել են խնայողության ռեժիմի կիրառման հարցերին, բարձրացրել այդ գործում տնտեսական ղեկավարների և ինժեներատեխնիկական աշխատողների պատասխանատվությունը, մոբիլիզացրել աշխատավորների ուժերը էլեկտրաէներգիայի, հումքի ու նյութերի ռացիոնալ օգտագործման համար։

Տասներորդ հնգամյակի առաջին իսկ տարում երկրի շատ առաջավոր ձեռնարկություններ և գիտահետազոտական հիմնարկություններ հանդես եկան խնայողության և տնտեսման համար շարժում ծավալելու հայրենասիրական նախաձեռնությամբ։ Այն լայն արձագանք ստացավ նաև Լենինյան շրջանի աշխատավորական կոլեկտիվներում։ Կուսշրջկոմն այդ առթիվ իր ընդունած որոշմամբ պարտավորեցրեց սկզբնական կազմակերպություններին՝ առավել ուշադրություն նվիրել խնայողության ռեժիմի հետևողական կիրառմանը և 1976 թ. նոյեմբերից անցկացնել այդ խնդրին նվիրված ստուգատես։ Նրանց ուշադրությունը հրավիրեց հատկապես ներարտադրական ռեզերվների առավելագույն օգտագործման, այդ ասպարեզում կուտակված առաջավոր փորձի արմատավորման, արտադրության նորարարների նախաձեռնությունների տարածման վրա։ Արդյունաբերական ձեռնարկություններում, տրանսպորտի ու շինարարական կազմակերպություններում ստեղծվեցին ստուգատեսային հանձնաժողովներ։

Այդ շարժման ծավալման առաջին երկու ամսում (նոյեմբեր-դեկտեմբեր) շրջանի ձեռնարկություններում, հումքի, նյութերի, էլեկտրական ու ջերմային էներգիայի տնտեսման նպատակով, արվեց 229 ռացիոնալիզատորական առաջարկություն՝ 1,5 միլիոն ռուբլու տարեկան պայմանական օգուտով։ Իսկ 1977

թվականին, երբ նյութական միջոցների խնայողությանը նվիրված հասարակական ստուգատեսը թևակոխել էր իր վճռական փուլը, շրջանում տնտեսվեցին 32 միլիոն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 21 հազար տոննա պայմանական վառելիք, արտադրանքի ինքնարժեքի արտապլանային իջեցումից ստացված օգուտները կազմեցին 8,3 միլիոն ռուբլի։ Առաջավոր բանվորներն ու մասնագետներն ստուգատեսային հանձնաժողովներին ներկայացրին հումքի, օժանդակ նյութերի, էլեկտրական ու ջերմային էներգիայի տնտեսմանն ուղղված մի քանի հարյուր ռացիոնալիզատորական առաջարկություն՝ ավելի քան մեկ միլիոն ռուբլու պայմանական օգուտով։

Խնայողության ռեժիմի հետևողական կիրառմանը, նյութաֆինանսական ռեսուրսների ռացիոնալ օգտագործմանը մեծապես նպաստում են նաև շրջանի ձեռնարկությունների կոլեկտիվների՝ այդ նպատակին ուղղված նախաձեռնությունների լայն տարածումն ու արմատավորումը։ Այս առումով ուշագրավ է «Նաիրիտ» գիտաարտադրական, կոշիկի «Մասիս» արտադրական միավորումների և կոմպլեքսային էլեկտրասարքավորումների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի կոլեկտիվների «տնտեսմանն ու խնայողությանը՝ գիտատեխնիկական և ինժեներական ապահովում» նախաձեռնությունը։ Այն քննարկվեց ՀԿԿ Երևանի քաղկոմի բյուրոյում և արժանացավ նրա հավանությանը։ Որոշվեց լայնորեն տարածել այդ նոր շարժումը։ Նախաձեռնության հեղինակների հետ միասին վառելիքի և էլեկտրաէներգիայի խնայողության համար ծավալվող պայքարում լուրջ հաջողությունների հասան նաև «Հայէլեկտրամեքենա», «Հայէլեկտրաապարատ» արտադրամիավորումների, «Պոլիվինիլացետատ», Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանների, ջերմաէլեկտրակենտրոնի և այլ ձեռնարկությունների կոլեկտիվներ։

Ընթացիկ հնգամյակում շրջանի կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, տնտեսական ղեկավարները և ժողովրդական վերահսկողության մարմինները բավականաչափ փորձ են կուտակել հումքի, էլեկտրական, ջերմային էներգիայի և վառելիքի խնայողաբար օգտագործման վերաբերյալ կուսակցության և կառավարության դիրեկտիվները կատարելու գործում։ Այդ նպատակով կազմակերպվել են զանազան ստուգայցեր ու հասարակական ստուգատեսներ, որոնց մասնակցել են հազարավոր ակտիվիստներ, բանվորներ ու ծառայողներ։ Նրանց խելացի առաջարկությունների իրականացման և բացահայտած թերությունների վերացման շնորհիվ էլեկտրաէներգիան, վառելիքը, հումքն ու նյութերն օգտագործվել են առավել ռացիոնալ ու արդյունավետությամբ։ Պայքար է ծավալվել յուրաքանչյուր կվտ-ժամ էլեկտրաէներգիայի, յուրաքանչյուր կիլոգրամ հումքի ու վառելիքի խնայողության համար։ Այս առումով մեծ են ջերմաէլեկտրակենտրոնի կոլեկտիվի հասումները։ Խնայողության նպատակով ստուգատես անցկացնելու վերաբերյալ կուսշրջկոմի բյուրոյի որոշումը քննարկվեց սկզբնական կուսկազմակերպությունում։ Դիրեկցիան ու կուսբյուրոն մշակեցին միջոցառումների պլան՝ վառելիքի ծախսի կրճատման, խնայողության խստագույն ռեժիմի կիրառման, թաքնված ռեզերվների հայտաբերման և օգտագործման նպատակով։ Միայն 1978 թ. առաջավոր բանվորները հանդես եկան 180 ռացիոնալիզատորական առաջարկություններով, որոնց ներդրումից ստացվեց 444 հազար ռուբլու պայմանական օգուտ։ Տասներորդ հնգամյակի տարիներին ջերմաէլեկտրակենտրոնը տնտեսել է մեծ քանակությամբ էլեկտրական ու ջերմային էներգիա։ Խնայած վառելիքի հաշվին կայանը 1977 թ. երկու, իսկ 1978 թվականին՝ մեկուկես օր շարունակ հանրապետության ժողովրդական տնտեսությանն ու բնակչությանը մատակարարել է ջերմային և էլեկտրական էներգիա։ 1978 թ. չորս եռամսյակ անընդմեջ էներգետիկները հաղթող ճանաչվեցին համամիութենական սոցիալիստական մրցությունում և արժանացան ՍՍՀՄ էներգետիկայի ու էլեկտրիֆիկացիայի մինիստրության ու ճյուղային արհմիության Կենտկոմի փոխանցիկ դրոշին և դրամական առաջին կարգի մրցանակի։

Ի տարբերություն անցած տարիների, այժմ շրջանում խոսքը ոչ թե հումքի ու նյութերի, էներգառեսուրսների գերածախսի կանխման, այլ խնայողության պետական առաջադրանքի կատարման ու գերակատարման մասին է։



1978 թվականի սկզբին ՍՄԿԿ Կենտկոմը քննարկեց «Կեմերովոյի մարզի ձեռնարկություններում ու կառույցներում վառելիքային և էներգետիկ ռեսուրսների խնայողության համար ՍՄԿԿ մարզկոմի ծավալած կազմակերպչական և քաղաքական աշխատանքի մասին» հարցը և ընդունեց համապատասխան որոշում։

Խնայողության ռեժիմի արմատավորմանը մեծ ուշադրություն նվիրեց նաև ընկեր Լ. Ի. Բրեժնևը՝ Սիբիրի և Հեռավոր Արևելքի շրջանները կատարած ուղևորության ժամանակ։ Նրա ցուցումներն ու առաջարկությունները գործողության ուղեցույց դարձան նաև Լենինյան շրջանի կուսկազմակերպության համար։ Շրջկոմի բյուրոն, ելնելով այդ ցուցումներից ու առաջարկություններից, մշակեց կոնկրետ միջոցառումների պլան։ Այնուհետև այդ հարցը քննարկվեց նաև շրջանի ժողովրդական վերահսկողության մարմինների ակտիվի ժողովում. որոշվեցին վերահսկիչների խնդիրները խնայողության ռեժիմի կիրառման, ռեզերվների հայտաբերման և օգտագործման ասպարեզում։

Կուսշրջկոմի և ակտիվի ժողովի որոշումներից հետո խնայողության համար պայքարն ավելի ուժեղացավ, նոր թափ ստացավ սոցմրցությունը։ Բրիգադների, արտադրամասերի կոլեկտիվները և անհատ բանվորներն ստանձնեցին նոր պարտավորություններ՝ էլեկտրաէներգիայի, նյութերի և հումքի խնայման նպատակով։ Գործին մեծապես օգնեց նաև շատ արդյունաբերական ձեռնարկություններում և շինարարական կազմակերպություններում հումքի, նյութերի, վառելանյութի, ջերմաէներգետիկ ռեսուրսների խնայողության հաշվառման քարտերի ներդրումը՝ ըստ բրիգադների, տեղամասերի, արտադրամասերի, ինչպես նաև անհատ մրցողների։ Նման հաշվառման շնորհիվ էլեկտրաապարատների գործարանի՝ Խ. Աբգարյանի ղեկավարած էլեկտրամոնտաժողների բրիգադը պարտավորվել է ամեն ամիս երկու օր աշխատել խնայված հումքով։ Ավտոդողերի գործարանի փաթաթող նորոգողներ Գագիկ Ավետիսյանի և Էդիկ Ավլաստիմովի ղեկավարած բրիգադները սահմանել են սարքավորումների էլեկտրական վիճակի հսկողության ամենօրյա հերթապահություն, որի շնորհիվ գրեթե բացառվել են պարապուրդները։ Մեծ կարևորություն է տրվում նորոգման որակին, որը սարքավորումների հուսալի աշխատանքի, երկարակեցության և խնայողության երաշխիք է։ Անձնական հաշվառման քարտերով են աշխատում նաև «Հայէլեկտրամեքենա», կոշիկի «Մասիս» արտադրամիավորումների, Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի, Նուրբ-բրդյա գործվածքեղենի կոմբինատի և այլ կոլեկտիվների առաջավոր շատ բանվորներ ու բրիգադներ։

Էներգառեսուրսների օգտագործման համար տեխնիկապես հիմնավորված նորմաների մշակման ու ներդրման, առավել քիչ էներգատար սարքավորումների տեղադրման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման, սարքավորումների շահագործման օպտիմալ ռեժիմի պահպանման, կորուստների կրճատման և նյութական միջոցների հաշվառման դրվածքի բարելավման շնորհիվ շրջանի աշխատավորական կոլեկտիվները տասներորդ հնգամյակի անցած երեք տարում խնայել են 70 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 28,4 հազար տոննա պայմանական վառելիք։ Ընդ որում, միայն 1978 թ. պայմանական վառելիքի խնայողությունը կազմել է ավելի քան 4.000 տոննա, էլեկտրաէներգիայինը՝ 18 մլն կվտ-ժամ, ջերմային էներգիայինը՝ 45 հազար հեկակալորիա։ Այս թվերը պարզ պատկերացնելու համար կարելի է նշել, որ 1913 թ. Հայաստանում արտադրվել է ընդամենը 5,1 միլիոն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, այսինքն՝ միայն մեկ տարում շրջանի տված խնայողությունը 3,5 անգամ գերազանցել է 1913 թվականին արտադրված էլեկտրաէներգիայի ծավալը։

Գիտատեխնիկական առաջընթացը, աշխատանքի և արտադրության գիտական կազմակերպումը, կադրերի պրոֆեսիոնալ բարձր պատրաստականությունը հնարավորություն են ընձեռում կանխելու անտնտեսվարությունը, կրճատելու անարտադրողական ծախսերը, նվազագույնի հասցնելու կորուստները։ Ժողովրդատնտեսական այս կարևոր խնդրի լուծմանը պետք է ուղղվեն ձեռնարկությունների ողջ տեխնիկական միտքը, կուսակցական ու հասարակա-

կան կազմակերպությունների գործունեությունը, բոլոր աշխատողների, առավել ևս՝ կոմունիստների ջանքերը։

Հումքի և էլեկտրաէներգիայի խնայողության գործին ճիշտ այս տեսանկյունից է մոտենում ավտոդողերի գործարանի կուսկազմակերպությունը։ Խստագույն նորմավորման, ռետինային խառնուրդների պատրաստման կայուն բաղադրամասերի պահպանման պայմաններում թեև դժվար է ապահովել կաուչուկի և զանազան արագացուցիչների տնտեսումը, սակայն ձեռնարկության կոլեկտիվը, այնուամենայնիվ, ուղիներ է գտնում դրա համար։ Անցած տարի դողագործները տնտեսել են ավելի քան 82 տոննա տարբեր տեսակի կաուչուկ, շուրջ 608 տոննա տեխնիկական ածխածին, 3,5 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա և ավելի քան 1.400 հեկակալորիա ջերմաէներգիա։

Այստեղ խնայողության ուղիները տարբեր են, սակայն հիմնականը եղել և մնում է խոտանի կրճատումը, որը նույնպես իրականացվում է տեխնիկական ու կազմակերպական տարբեր միջոցներով՝ սարքավորումների ժամանակին նորոգմամբ ու կատարելագործմամբ, նոր հաստոցների ու ագրեգատների տեղակայմամբ, կադրերի մասնագիտական որակավորման ու նրանց պատասխանատվության բարձրացմամբ, որակի կոմպլեքսային կառավարման, հաշվառման ու խստագույն հսկողության իրականացմամբ։ Այդ ամենն իրենց միասնության մեջ ցանկալի արդյունք են տալիս։ Պատահական չէ, որ պետական որականիշով թողարկվող երևանյան մակնիշի առաջին ավտոդողից հետո ատեստացիոն հանձնաժողովը բոլորովին վերջերս որակի հնգանիստ նշանի ներկայացնելու համար երաշխավորել է ևս երկու մակնիշի ավտոդողեր։

Հումքի և կիսաֆաբրիկատների խնայողությանն է նպատակամղված նաև գործարանի նորարարական միտքը։ Հավաքման արտադրամասի բանվոր Բենիկ Միկիչյանը և փականագործ Հրանտ Սաֆարյանն առաջարկեցին ավտոդողի բրեկերային ռետինի շերտը փոխարինել բրեկերով ռետինապատված կորդով, որի շնորհիվ կրճատվեց բրեկերային ռետինի ծախսման նորման։ Արժեքավոր այս առաջարկությունը գործարանին բերեց տարեկան 35.650 ռուբլու պայմանական օգուտ։

Կուսկոմիտեն առանձնահատուկ ուշադրություն է հատկացնում էլեկտրաէներգիայի և ջերմաէներգիայի խնայողության հարցերին։ Ստուգումները ցույց տվեցին, որ գործարանում էլեկտրական ու ջերմային էներգիայի զգալի կորուստ է տրվել։ Հարցի մանրազնին ուսումնասիրությունից հետո վերջերս այն քննարկվեց կուսկոմիտեում։ Կուսակցական սկզբունքայնությամբ գնահատելով մեխանիկական և էներգետիկ ծառայությունների աշխատանքը, կուսկոմիտեն պահանջեց ադմինիստրացիայից՝ կոնկրետ միջոցներ ձեռնարկել կորուստները կրճատելու համար և այդ առթիվ հաստատեց համապատասխան պլան։

Անցել է շատ կարճ ժամանակ, բայց արդյունքներն արդեն զգալի են. ջերմաէներգիայի հետադարձ գծերի վրա տեղադրվել են կոնդենսացիոն հարմարանքներ, նորոգվել են ջերմատար խողովակները, փակվել են գոլորշու արտահոսքի ուղիները։ Նախատեսվում է հավաքել և Երևանի ջերմաէլեկտրակենտրոն վերադարձնել օգտագործված գոլորշին։ Այդ նպատակով մշակվել են կոնկրետ միջոցառումներ, որոնք հաջորդաբար իրականացվում են։

Խստագույն հսկողություն է սահմանվել տեխնոլոգիական սարքավորումների պարապուրդը կրճատելու միջոցով էլեկտրաէներգիայի խնայողության նկատմամբ, կատարելագործվում է արտադրամասերի ու տեղամասերի էլեկտրալուսավորության համակարգը։ Այլ խոսքով, ստեղծվում են բոլոր նախադրյալները, որպեսզի գործարանի կոլեկտիվը մոտ ապագայում հասնի էլեկտրաէներգիայի և ջերմաէներգիայի խնայողության՝ իր համար ռեկորդային ցուցանիշների։

Չնայած ձեռք բերած էական հաջողություններին՝ շրջանի ձեռնարկություններում խնայողության ռեժիմի կիրառման գործում կան նաև լուրջ թերություններ ու վրիպումներ։ Առանձին արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական ու տրանսպորտային կազմակերպությունների, կոմունալ հիմնարկությունների ղեկավարներ ու համապատասխան ծառայություններ, նրանց



կուսկազմակերպությունները լրջորեն չեն զբաղվում հումքի ու նյութերի էներգառեսուրսների օգտագործման նպատակով կազմակերպական-տեխնիկական միջոցառումների մշակման և կենսագործման հարցերով։ Դրանք հաճախ մշակվում են հապճեպ, առանց կոլեկտիվի անդամների և նույնիսկ ակտիվի կարծիքը հաշվի առնելու։ Այդ ամենի հետևանքով անարդյունավետ են օգտագործվում ձեռնարկությունների հսկայական ռեզերվները։ Նրանց մեծ մասում չեն ներդրվել վառելիքի և էլեկտրաէներգիայի գիտականորեն հիմնավորված նորմաներ, դրանք մշակվում են ըստ իրացված արտադրանքի, այլ ոչ՝ ըստ արտադրանքի միավորի։

Ժողովրդական վերահսկողության կոմիտեի ստուգումները ցույց են տալիս, որ շրջանի մի շարք հիմնարկ-ձեռնարկությունների տնտեսական ղեկավարներ կազմակերպական-տեխնիկական արդյունավետ միջոցներ չեն մշակել էներգառեսուրսների ռացիոնալ օգտագործման համար, որի հետևանքով տեղիք են տվել ջերմային էներգիայի և վառելիքի զգալի կորուստների։ Այսպես, անցած տարվա միայն առաջին կիսամյակում կաբելի գործարանում պայմանական վառելիքի գերածախսը կազմել է 136 տոննա, «Պլաստիկ» արտադրամիավորումը 1978 թ. առաջին եռամսյակի ընթացքում գերածախսի համար վճարել էր 1.615 ռուբլի տուգանք. «Հայհախճապակի» արտադրամիավորումում սարքավորումները գործում են թերբեռնվածությամբ, արտադրամասերում ցերեկային լուսավորությունն օգտագործվում է ոչ խնայողաբար։ Հետևանքը՝ զգալի տուգանքի վճարումն է։

Դեռևս որոշակի կարգ ու կանոն չի հաստատված վառելանյութերի ծախսման բնագավառում։ Որոշ ավտոտնտեսություններում, աշխատանքային ու պետական ցածր կարգապահության, ավտոմեքենաների ոչ արդյունավետ օգտագործման, նավթամթերքների նախնական հաշվառման և պահպանման, ավտոմեքենաների և լիցքավորող կայանների տեխնիկական անբավարար վիճակի պատճառով, կատարվել են նավթամթերքների մեծ չափերի հասնող շռայլումներ ու վատնումներ։

Կուսշրջկոմը ձեռնարկությունների ղեկավարների, սկզբնական կուսկազմակերպությունների առջև խնդիր է դրել՝ գլխավորել վառելիքաէներգետիկ ռեսուրսների խնայողական, ռացիոնալ օգտագործման համար մղվող պայքարը, ամրապնդել պլանային և կատարողական կարգապահությունը տնտեսական շինարարության բոլոր բնագավառներում։ Նրանց հանձնարարվել է՝ հետևել վառելիքաէներգետիկ ռեսուրսների օգտագործման տեխնիկապես հիմնավորված նորմաների կիրառմանը, միջոցառումներ մշակել՝ ուժեղացնելու հսկողությունը ժողովրդական տնտեսության մեջ վառելիքի և էներգիայի ծախսման նկատմամբ, ինչպես նաև կատարելագործելու դրանց սպառման, հաշվառման և խնայողության նյութական խթանման համակարգը։ Կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններն իրենց ջանքերը գործադրում են այս որոշման կենսագործմանը, բարձրացնում են կոլեկտիվի պատասխանատվությունը խնայողության ռեժիմի կիրառման համար։ Կուսակցական կազմակերպությունները ջանում են կոլեկտիվի յուրաքանչյուր անդամին համակել արտադրության տիրոջ զգացմամբ, նրան դաստիարակել հանրային սեփականության հանդեպ սրտացավ վերաբերմունքի ոգով։

Հանրային արտադրության արդյունավետության բարձրացումը ո՛չ միայն գիտատեխնիկական կամ արտադրատնտեսական պրոբլեմ է, այլև խոշոր սոցիալական խնդիր, որի պատշաճ լուծման ուղիներից մեկը խնայողության ռեժիմի կիրառումն է։ Արդի պայմաններում առանձնահատուկ ուժ է ստանում լենինյան այն միտքը, որ կոմունիզմը սկսվում է ամեն մի փութ մետաղի և հացահատիկի խնայողության, աշխատանքի արտադրողականության բարձրացման նկատմամբ աշխատավորների ցուցաբերած ամենօրյա հոգատարությունից։ Շրջանի կոմունիստները լավ գիտեն, որ խնայողության ռեժիմի հետևողական կիրառումը ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կենսագործման, տասներորդ հնգամյակում շրջանի առջև ծառացած խնդիրների լուծման կարևորագույն պայմանն է։

---

# ԱՐԺԵՔԱՎՈՐ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆ ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ՄԱՍԻՆ

**ՍՏԵՓԱՆ ՇԱՀՈՒՄՅԱՆԻ** մասին շատ է գրվել: Նրա բազմաբեղուն հեղափոխական գործունեությունը լուսաբանվել է ընդհանուր պատմագիտական գրականության մեջ, նրան նվիրված մենագրություններում, հուշագրություններում ու գեղարվեստական երկերում: Շահումյանի ծննդյան հարյուրամյակի առիթով հրապարակվեցին նոր հետազոտություններ:

Այս գրական նորույթների մեջ ուրույն տեղ է գրավում պատմագիտական մի շարք արժեքավոր աշխատությունների հեղինակ Մակիչ Արզումանյանի ստվարածավալ գիրքը: Ինչպես ցարդ հրապարակված այս տիպի մենագրություններում, այստեղ ևս հեղինակին ըզբաղեցրել է գերազանցորեն Շահումյանի քաղաքական-հասարակական ու գրական գործունեությունը՝ իր տարբեր դրսևորումներով: Գիրքը պարունակում է նորահայտ փաստեր, լրացումներ ու ճշգրտումներ, նոր լուսաբանություններ: Այս ծանրակշիռ մենագրությունը, որ ուշագրավ գործ է պատմագիտության մեջ, անտարակույս, արդյունք է մանրակրկիտ, բազմակողմանի ուսումնասիրության, ինչպես և Շահումյանի գործունեության ու գրական ժառանգության տարբեր կողմերի առավել խորազնին գնահատման:

Հետազոտողներին լավ ծանոթ անդրկովկասյան արխիվների նյութերից զատ հեղինակը նոր տվյալներ է քաղել Ռուսաստանի ու Լատվիայի արխիվային ֆոնդերից և վերջին շրջանի միութենական արխիվային հրապարակումներից, անցյալում՝ չօգտագործված, կամ ընթերցողների լայն շրջաններին անծանոթ նյութեր՝ նամակագրական ժառանգությունից: Մ. Արզումանյանն ավելի հանգամանալի է ուսումնասիրել բոցաշունչ հեղափոխականին ժամանակակից և հետհեղափոխական շրջանի պարբերական մամուլը: Շահումյանի գործունեության տարբեր շրջանների բնութագրման համար հարուստ աղբյուր են ծառայել հրապարակված հուշագրությունները, հատկապես Պետրոգրադի բոլշևիկ գործիչ Լյուդմիլա Վորոնովայի գրառումները և Շահումյանի երկու մերձավոր զինակիցների՝ Նադեժդա Կոլեսնիկովայի (Բաքվի կոմունայի լուսավորության ժողկոմ) և Անաստաս Միկոյանի հուշերը: Միկոյանի հուշերի՝ 1973-ին լույս ընծայված առաջին հատորը հնարավորություն է ընձեռել որոշ էական ճշտումներ կատարելու Բաքվի կոմունայի պատմության առանձին դրվագների լուսաբանման գործում:

Այս առումով կարևոր են և մեջ բերված անգլիական աղբյուրները: Գեներալ Դենստերվիլի և էսէռ Վադիմ Չայկինի՝ ժամանակին մեծ աղմուկ հանած վկայությունների, ապա 1928-ին լույս տեսած Բաքվի կոմունայի կոմիսարների վերջին օրերը ժողովածուում եղած փաստաթղթերի կողքին ներկայացվել են ինքնարդարացման նկրտումներով հորինված, բայց փաստորեն աններքելի ինքնամերկացում հանդիսացող որոշ վավերաթղթեր, ինչպես Ռոնալդ Մակ-Դոնելի կամ գեներալ Ուելֆրիդ Մալեսոնի վկայագրերը:

Նման համակողմանի հետազոտության վրա հիմնված մենագրությունը, անշուշտ, ընթերցողին հնարավորություն կընձեռի ամբողջությամբ պատկերացնելու Ստեփան Շահումյանի հերոսական կյանքի ուղին: Փաստական հարուստ տվյալներով հատկապես ուշագրավ է մենագրության այն բաժինը, որը, խորհրդանշելով Շահումյանի կյանքի շրջադարձային պահը, սկզբնավորում է նրա մտավոր ու հոգևոր կազմավորման և հետևողական ու նպատակալաց կենսագործունեության մի նոր շրջան: Խոսքը վերաբերում է ամենից առաջ Շահումյանի մանկության ու պատանեկության տարիները բնութագրող տվյալներին. բարեբախտ հանգամանքների բերումով Ալեքսանդր Երիցյանի նշանավոր «ընտանեկան մանկապարտեզում» անցկացրած և երկու մասնավոր դպրոցներում ուսանելու շրջանում Ստեփանն արդեն հանդես է գալիս իբրև շատ ընդունակ, ուշիմ ու ջանասեր, նաև հպարտ ու պատվախնդիր մի պատանի: Դեռևս ինը տարեկան, ռուսերենի մասնավոր դասերին նա ռեպետիտոր է վաճառական Խիտարովի որդու՝ իր դասընկերոջ համար, և այս մարդուն հաջողվում է ստիպել Ստեփանի ծնողներին իրենց արտակարգ ընդունակ զավակին չուղարկել գիմնազիա, այլ տալ ռեալական ուսումնարան: Իսկ այստեղ էլ, նյութական փոխհատուցում խոստանալով, շփացած դրամատերը փորձում է հարկադրել Ստեփանին երկրորդ տարին նստել նախապատրաստական բաժանմունքում, մինչև իր տհաս ժառանգը «հավասարվի» նրան ու միասին «առաջ գնան»...

Ստեփանն անկարող է տանել այս կամայականությունը և մտադրվում է թողնել ուսումը, ծառայության մտնել, օգնել ընտանիքին: Դրությունը դարձյալ փրկում է Ալեքսանդր Երիցյանը: Նրա միջնորդությամբ Կովկասի ուսումնական օկրուգի հոգաբարձու Պ. Յանովսկին կարգադրում է ռեալականի տեսչին «ճրիավարժ» համարել ընդունակ պատանուն և հոգալ նրա համազգեստի և ուսումնական պիտույքների ծախսը:

Այսպիսով, ապագա հեղափոխականը դեռ վաղ պատանեկությունից պատկերացում է կազմում սոցիալական անհավասարության դառը պտուղների մասին, իր մաշկի վրա ըզգալով դրա կեղեքիչ ծանրությունը: Թիֆլիսի փողոցներում շատ անգամ հանդիպած տանջահար մշակներից ու շղթայակապ կալանավորներից հետո, նա շուտով Ուզունլարում տեսնում է չարքաշ ու տնանկ հողագործների, իսկ Գորիում՝ կախաղան հանված գյուղացիների: Մեծ գրողների դասական գործերը ևս օգնում են՝ տարբերելու չարն ու բարին, հարստահարվողներին՝ կեղեքիչներից:

Ընդլայնվում, բազմաբովանդակ է դառնում Շահումյանի անցած կյանքի դպրոցը, ընդգրկելով կենսական նոր ոլորտներ ու տպավորություններ: Սանահինի վանքի ճարտարապետական վեհությամբ, դրա ձեռագրատան գանձերով հիացած, նա տեսնում է նաև վանականների տգիտությունն ու երեսպաշտությունը: Դսեղում, Հովհաննես Թումանյանի հետ զրուցելիս, նրա հոգին խոցում է բանաստեղծի հավերժական գանգատը՝ դառը դատող մարդու ճակատագրից... Եվ ժողովրդասիրական հովերը համակում են ճշմարտություն որոնող զգայուն պատանու միտքը. իր հասակակիցներին ևս նա վարակում է նորաբողբոջ հույզերով ու իղձերով:

Ավելի քան բնական է Շահումյանի համար ինքնակրթության ու միջավայրի ուսումնասիրության այս փուլը, որը փոխադրում է նրան ժամանակի սոցիալական մեծ պրոբլեմների ոլորտը: Դրան հաջորդում է անցումը Բելինսկուց ու Գերցենից, Չերնիշևսկուց, Դոբրոլյուբովից ու Նալբանդյանից դեպի Պիսարև, Տիմիրյազև, Բոկլ, Կովալևսկի, Զոմբարտ, այսինքն՝ դեպի հիմնարար սոցիոլոգիական ու տնտեսագիտական գրականություն: Սա արդեն պարզ ինքնակրթություն չէ. իր գիտցածը, իր որոնումների արգասիքը «Միածան» ընկերության միջոցով նա ի սպաս է դնում Թիֆլիսի ուսումնասեր հայ պատանեկությանը, գաղափարական բախումների մեջ մարզելով նաև իր միտքն ու հոգին: Նրան խորապես հուզում են կյանքի հրատապ ու կնճռոտ հարցերը: Սասունի դաժան կոտորածն ստիպում է ո՛չ միայն ողբալ, այլև ելք որոնել ազգային հարստահարումից, փնտրել, կշռադատել ու հայրենասերի ջերմ սրտով զգալ, գիտակցել, որ սուլթանական Թուրքիան հայերի կոտորածը վերածել է պետական քաղաքականության, և որ բարենորոգումների խոստումները ևս «անկասկած տանկական սովորական աչքակապություններ են»:

Թիֆլիսը, իբրև ժամանակակից կուլտուրայի միջազգային մի կենտրոն, կլանում է ուսումնասեր պատանուն: Նա տարվում է թատրոնով ո՛չ միայն իբրև հանդիսատես, այլև սիրող-դերակատար, այնտեղ հանդիպում այնպիսի մարդկանց, ինչպես՝ Մաքսիմ Գորկին, Ֆեոդոր Շալյապինը, Իսահակ Ալիխանյանը, ոգևորվում Սունդուկյանի և Շիրվանզադեի դրամատուրգիայով: Ղարաքիլիսայից ուղևորվելով Անի՝ նա ծանոթանում, մտերմանում է ժամանակի հայ մտավորականության կարկառուն դեմքերի՝ Ստեփան Մալխասյանցի, Մակար Եկմալյանի հետ, սքանչանում Անիի ավեր բերդաքաղաքի պատմական վեհությամբ ու ճարտարապետական արվեստի կոթողներով, որոնք այդ օրերին պեղում ու վերծանում էին Նիկողայոս Մառը և Հովսեփ Օրբելին:

Երիտասարդության շեմին ոտք դնող Ստեփանի համար հոգեկան վեհ վայելքների ու ոգեշնչման աղբյուր է մտերմությունը ջալալօղլեցի Տեր-Գրիգորյան քույրերի հետ: Այս մտերմությունը ևս նրան մղում է ինքնաքննության, ինքնագիտակցման և 1896-ին արդեն ազատաբաղձ երիտասարդն ընտրում է իր նշանաբանը. «Ապրե՛լ, կռվե՛լ, հաղթե՛լ»: Հազիվ մեկ տարի անց, 1897-ի աշնանը, հանդիպելով Լադո Կեցխովելուն, նա մի քանի համախոհ երիտասարդների հետ անդամագրվում է նրա ղեկավարությամբ գործող սոցիալ-դեմոկրատական խմբակին, որով և, ինչպես շեշտում է հեղինակը, սկզբնավորվում է նրա հետևողական ինտերնացիոնալիստի գործունեությունը:

* *Մ. Վ. Արզումանյան*, Ստեփան Շահումյան, «Հայաստան» հրատ., 1978, էջ 646:

Ահա և առաջին հրապարակային ըմբոստությունը. 1898-ի հունիսին, ռեալական ուսումնարանի դահլիճում, քաղաքի անվանի մարդկանց ներկայությամբ, ըստ այբբենական կարգի համարյա վերջինը մոտենալով ավարտական վկայական ստանալու, նա՝ շրջանավարտներից առաջինը, հրաժարվում է խոնարհվել՝ համբուրելու Վրաստանի ուղղափառ եկեղեցու էկզարխի աջը...

Այս ժամանակաշրջանը մենագրության մեջ իրավամբ բնութագրվում է իբրև աստիճանական անցում դեմոկրատիզմից դեպի հեղափոխականություն:

Չորս տարի հետո, Թիֆլիսում, 1902 թվականի մայիսի 19-ին, Ռիգայից արտաքսված Ստեփանը Ղազարոս Աղայանի հոբելյանին փորձում է կարդալ իր հեղինակած ուղերձը, որը, ինչպես գրում է հեղինակը, նրա առաջին հրապարակային ծրագրային-քաղաքական ելույթն էր: Իբրև մարդկային ազնվության ու արժանավորության իդեալ նշելով Գերցենի, Բելինսկու, Չերնիշևսկու, Դոբրոլյուբովի, Պիսարևի և Նալբանդյանի օրինակը, նա հիշեցնում է. «Նրանք չեն գրել այն, ինչ որ թույլ կտան տպագրելու, այլ գրել են այն, ինչ պահանջ են ունեցել գրելու, ինչ որ չէին կարող չգրել,— և հասցրել են իրենց գրածները ժողովրդին»: «Հոբելյանական ճառը» պարունակում էր այն ժամանակ վերին աստիճանի հանդուգն հնչող մտքեր ու կոչեր. «Մի երկրում, որտեղ չկա խոսքի և մտքի ազատություն, որտեղ ժողովուրդը շնորհիվ տիրող պետական քաղաքականության՝ աղքատ է ու տգետ, և քաղաքակրթության բարիքները վայելելու արտոնությունը պատկանում է միայն փոքրաթիվ ապահով դասակարգին, որտեղ օրենքի տեղ տիրում է ցենզուրական կամայականությունը,— երբեք չի կարող իր կոչմանը ծառայող հասարակական-ժողովրդական գրականություն լինել»:

Ծարադրելով երիտասարդ Շահումյանի բորբոքուն մտքին հույժ բնորոշ այս ճառի բովանդակությունը, գրքի հեղինակը հիշեցնում է Հակոբ Հակոբյանի հիշարժան վկայությունը: Հոբելյանից մի քանի օր հետո հանդիպելով Աղայանին, բանաստեղծը հարցրել է նրան այդ հանդիսություններում «դիտնանս առաջ բերած» ճառի մասին: «Միակ անկեղծը Շահումյանի խոսքերն էին, և ես դրանք երբեք չեմ մոռանա»— իր պարզ ու անկեղծ տոնով պատասխանել է Աղայանը: Հասունացող նշանավոր քաղաքական գործչի զարգացման նոր շրջանն է խորհրդանշում այս ելույթը: Անցած չորս տարիները ուսանելու, հեղափոխական շարժման ապագա գործիչ Ստ. Շահումյանի կոփման ժամանակաշրջանն էին: Պետերբուրգում և Ռիգայում անմիջականորեն հաղորդակցվելով հակացարական պայքարին, նա հանդես է գալիս իբրև խիզախ և անկուն, հնարագետ ու անձնազոհ գործիչ:

Շահումյանի գրչին է պատկանում հայ մարքսիստական գրականության առաջին քաղաքական վավերագիրը՝ «Հայ սոցիալ-դեմոկրատների միության մանիֆեստը», որն արժանացել է Վ. Ի. Լենինի ջերմ հավանությանը: Շահումյանի համար բացառիկ նշանակություն ունեցան հանդիպումները Վ. Ի. Լենինի հետ (առաջին անգամ 1903 թ., Ժնևում), որ հետագայում վերածվեցին սերտ բարեկամության, որն այնպիսի անմիջական ջերմությամբ դրսևորված է նրանց նամակագրության մեջ: Ստեփան Շահումյանը դառնում է Լենինի մեծ գործի ու գաղափարների բոլորանվեր մարտիկը: Նա բացառիկ խորությամբ ըմբռնում է առաջնորդի խոհերն ու մտորումները մոտալուտ գալիքի շուրջ, և միաժամանակ նրա առջև ավելի հստակ են գծագրվում Կովկասի բոլշևիկների մարտական խնդիրները:

Այդ ժամանակաշրջանը (1903—1916), որը հղի էր հեղափոխական ցնցող դեպքերով, խոր ներգործություն ունեցավ Շահումյանի վրա: Ընդլայնվեցին նրա առնչությունները անվանի պրոֆեսիոնալ հեղափոխականների (Ա. Բեբելի, Ֆ. Մերինգի, Կ. Լիբկնեխտի, Ռ. Լյուքսեմբուրգի և այլոց) և անմիջական կապերը Ռուսաստանի կուսակցական կազմակերպությունների ղեկավար գործիչների հետ. նա հետևողականորեն սկսեց զբաղվել տեսական-կազմակերպական ակտիվ գործունեությամբ, վարպետորեն համատեղելով պայքարի լեգալ և անլեգալ ձևերը:

Լոնդոնում, վիպասան Րաֆֆու որդու՝ Արամ Րաֆֆու հրավերով, Ար. Երզնկյանի, Ա. Կախոյանի և այլոց հետ մեկտեղ, Շահումյանը հանդիպում ունեցավ Լոնդոնի հայ գաղութի հետ՝ կատարելով իր հայրենասիրական պարտքը:

Արտասահմանում Շահումյանը դառնում է կենդանի կապող օղակ Իլյիչի, կուսակցության ղեկավար կենտրոնի և Կովկասի բոլշևիկների միջև: Նրա անմիջական մասնակցությամբ հայերեն հրատարակվում են Մարքսի, Էնգելսի, Լենինի մի շարք աշխատություններ, մասնավորապես Կոմունիստական կուսակցության մանիֆեստը:

Ստեփան Շահումյանը ազգային հարցի խոր գիտակ էր. ելնելով մարքս-լենինյան հիմնարար դրույթներից՝ նա ցույց է տալիս, որ ազգային հարցը, կարևոր լինելով հանդերձ, սոցիալական մեծ պրոբլեմի բաղկացուցիչ մասն է, ուստի և դրա արմատական լուծումը կապված է այդ պրոբլեմի լուծման հետ: «Միության մեջ է պրոլետարիատի ուժը», գտնում էր նա. «Այո՛, պրոլետարիատի համար օգտակար է, անհրաժեշտ է ուժերի միացումը, կենտրոնացումը՝ առանց ազգերի խտրության»:

Նկարագրելով ականավոր կուսակցական-հեղափոխական գործչի փոթորկոտ կյանքը, հեղինակը պատկերացում է տալիս նրա տեսական-հրապարակախոսական գործունեության մասին, վերլուծելով և ըստ արժանվույն գնահատելով նրա գրական ժառանգությունը, որն զգալի չափով նվիրված է հայ գրականության հրատապ ու կենսահույզ խնդիրներին:

Գործելու նոր, լայն ասպարեզ է բացում 1917-ի փետրվարյան հեղափոխությունը. Շահումյանն ընտրվում է Բաքվի խորհրդի, ապա ժողկոմխորհի նախագահ: Սկսվում է լայն ժողովրդականություն վայելող հեղափոխական ղեկավարի բեղմնավոր գործունեությունը: 1917 թվականի դեկտեմբերին Շահումյանը նշանակվում է Կովկասի գործերի ժամանակավոր արտակարգ կոմիսար և անձնվիրաբար ու հետևողականորեն կատարում կենտրոնական սովետական կառավարության կարևորագույն հանձնարարությունները: Հերոսական պայքարով և դրամատիկ իրադարձություններով հարուստ այս շրջանն էլ Մակիչ Արզումանյանի աշխատության մեջ լուսաբանված է ամենից ավելի հանգամանորեն:

Հետաքրքրությամբ են կարդացվում հատկապես գրքի վերջին՝ յոթերորդ և ութերորդ գլուխները (Կովկասի արտակարգ կոմիսարը և Բաքվի կոմունայի ղեկավարը, Ոճրագործության պատմության դատաստան):

Ստեփան Շահումյանը, երկար տարիներ քաղաքական պայքարի մեջ թրծված իր ընկերների հետ մեկտեղ, աշխատավոր ժողովրդի թշնամիների կատաղի ատելության մթնոլորտում, մշտապես իր կյանքը վտանգելով, դրսևորում է մտքի այնպիսի բարձր լարվածություն և հոգու այնպիսի անօրինակ կորով, շրջահայեցություն ու ճկունություն, աննահանջ խիզախություն, որ նրա գլխավորած դյուցազնամարտը և անձնական օրինակը կրկին ու կրկին համակում են հիացմունքի և խորին ակնածանքի զգացումով: Մենագրության էջերում հեղինակը սիրով ու անկեղծ ոգևորությամբ է ամփոփել այդ հերոսական պատմությունը: Հատկապես այս գլուխներում առավել ակնբախ է արտահայտված կովկասյան բոլշևիկների անկուն ղեկավարի անսպառ հմայքը ո՛չ միայն որպես խորագիտակ մարքսիստ-հեղափոխականի, այլև բացառիկ հեղինակավոր մարդու և կրքոտ հրապարակախոսի, որ իր հրեղեն խոսքով բորբոքել գիտեր մարդկանց սրտերը և իր հետևից տանել վճռական մարտերի:

Մի առանձին հմայք, նույնիսկ էպիկական վեհություն է հաղորդում այդ անձնազոհ պայքարին հեղափոխական գործիչների ընտանիքների՝ կանանց ու զավակների զինավառ մասնակցությունը, որի մասին պատմում է հեղինակը: Ցանկալի կլիներ փոքր-ինչ ավելի հանգամանորեն անդրադառնալ Շահումյանի անձնական կյանքին, նաև նրա ժառանգների գործունեությանը:

Հիշենք թեկուզ, որ Բաքվի համար ծանրագույն, ճակատագրական օրերին, երբ Լենինն ամեն օր նոր տեղեկություններ էր սպասում Բաքվից, կոչ անում ամեն ինչ անել Բաքուն, Կովկասը աղետալի վիճակից դուրս բերելու համար, ճանապարհի մեծ դժվարությունները հաղթահարելով՝ Մոսկվա են հասնում Վ. Գ. Իվանովը և Շահումյանի ավագ որդին: Տասնվեցամյա Սուրենը հանդիպում է Իլյիչին, հանձնում նրան հոր նամակը, պատմում Բաքվի իրավիճակի մասին: Լենինը, դիմելով ներկաներին, հիացմունքով ասում է. «Դուք տեսնո՞ւմ եք, թե արդեն ինչպիսի զավակներ ունի մեր հեղափոխությունը: Շուտով մենք կունենանք նաև այդպիսի թոռներ»:

Բաքվի 26 կոմիսարները նահատակվեցին մարտական դիրքում, մինչև վերջին շունչը հավատարիմ իրենց որդեգրած դավանանքին, վստահ իրենց մեծ գործին՝ հեղափոխության հաղթանակին: Իսկ նրանց կյանքն ու գործունեությունն արտացոլող գրքերը, լինեն դրանք գեղարվեստական թե պատմագիտական, ներկա ու գալիս սերունդներին սովորեցնում են լենինաբար ապրել ու գործել:

Մ. Արզումանյանը ջանացել է ճշմարտացի վերարտադրել բարդ իրադարձություններով հարուստ այս ժամանակաշրջանը: Ինչպիսի՜ այժմեականություն ունեն Վ. Ի. Լենինի խոսքերը հեղափոխական շարժման ռահվիրաներին նվիրված գրականության մասին: «Պրոլետարիատին ճշմարտությունն է հարկավոր թե՛ քաղաքական կենդանի գործիչների մասին և թե մեռածների մասին, որովհետև նրանք, ովքեր իսկապես արժանի են քաղաքական գործչի անվան, քաղաքականության համար չեն մեռնում, երբ տեղի է ունենում նրանց ֆիզիկական մահը»:

Գիտականորեն ու նվիրումով շարադրված այս աշխատությունը ևս մեզ խորհել է տալիս, որ իրոք նման ուսումնասիրությունները չպետք է մնան փաստագրական-արձանագրական ոճի շրջանակներում: Ընթերցողի համար ավելի տպավորիչ են այնպիսի հետազոտությունները, որոնք յուրօրինակ ինտելեկտուալ-հուզական

տարր են մտցնում երևույթների նկարագրության ու գնահատման մեջ, երբ հեղինակը չի սահմանափակվում փաստերի և իրողությունների թվարկումով, այլև դրսևորում է իր անձնական էրուդիցիան, ավելի լայն առումով՝ պատմագետի իր անհատականությունը: Հայտնի է, որ երկուսուկես տասնամյակի իր վերին աստիճանի ինտենսիվ գործունեության ընթացքում Շահումյանը տարբեր վայրերում ունեցել է բազմաթիվ համախոհ-բարեկամներ: Սկզբում՝ իրենից փորձառու մարդիկ, որոնցից շատ բան կարող էր սովորել, ապա՝ հիանալի մարտական զինակիցներ և հետո՝ գործիչներ, որոնց ուսուցիչն էր ինքը: Ահա նրանցից մի քանիսը, որ հիշատակված են գրքում. Միխա Ցխակայա, Դանուշ Շահվերդյան, Ռուբեն Դաշտոյան, Արշավիր Մելիքյան, Աշոտ Խումարյան, Ասատուր Կախոյան, Ֆիլիպ Մախարաձե, Սերգո Խանոյան, Սարգիս Կասյան, Արամայիս Երզնկյան, Շալվա Էլիավա, Ալյոշա Ջափարիձե, Նարիման Նարիմանով, Մամիա Օրախելաշվիլի, Աբել Ենուկիձե, Նադեժդա Կոլեսնիկովա, Իվան Իվանովիչ Սկվորցով-Ստեպանով, Հայկ Ազատյան, Գեորգի Ստուրուա, Սահակ Տեր-Գաբրիելյան, Իվան Ֆիոլետով, Ալեքսանդր Բեկզադյան, Կոտե Ցինցաձե, Համիդ Սուլթանով, Բագրատ և Արմենակ Բորյաններ, Վիկտոր Նանեիշվիլի, Օլգա Շատունովսկայա, Սուրեն Աղամիրով... Շահումյանի մտերիմները բոլորն էլ մի-մի վառ անհատականություններ են եղել և լավ կլիներ, հիշատակելիս, թեկուզ համառոտակի բնութագրել նրանցից ամեն մեկին, որպեսզի ժամանակակից ընթերցողը ռեալ պատկերացում կազմեր նրանց մասին:

Մակիչ Արզումանյանի աշխատության նախաբանում բերված է պատմական նշանակալից մի վկայություն, որ պատկանում է Օլգա Շատունովսկայային՝ Շահումյանի ամենասիրելի սաներից մեկին, որը Բաքվի կոմունայի դժվար օրերին նրա անձնական քարտուղարուհին և անփոխարինելի օգնականն էր. «Ստեփանը վիթխարի հեղինակություն և ժողովրդականություն ուներ Բաքվի բանվորների մեջ: Բավական էր նրա մի հայացքը, մի խոսքը, մի ժպիտը, որպեսզի մեզանից ամեն մեկը հանձն առներ տեղն ու տեղը մահվան ընդառաջ գնալու»:

Անշուշտ, մեծ հեղափոխականի կյանքին ու գործունեությանը նվիրված հրապարակումները կշարունակվեն. այդ են վկայում հայտաբերվող նորանոր նյութերը: Սակայն ամենայն իրավամբ կարելի է ասել, որ լույս է տեսել արժեքավոր մի մենագրություն, որը լուրջ երկ է մեր պատմակուսակցական գրականության բնագավառում:

ՌԱՖԱՅԵԼ ԱԹԱՅԱՆ

---

*ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ*

*Պատմագրական այս աշխատությունը, ցավոք, չունի անվանացանկ, առարկայացանկ և մատենացանկ: Չպետք է մոռանալ, որ նման աշխատությունները հետաքրքրական են և միութենական մատենագիտական առումով, ուստի և անհրաժեշտություն է ռուսերեն ամփոփագիրը: Ստվարածավալ այս մենագրությունում զետեղված է միայն մեկ նկար (առաջին էջում). մինչդեռ և՛ Շահումյանի, և՛ գրքում հիշվող հեղափոխական գործիչների լուսանկարները կարող էին ավելի գրավիչ ու հետաքրքրական դարձնել աշխատությունը, առավել ակնբախ դրսևորելով հերոսի կյանքի այլևայլ հանգամանքները, նրա մտերիմների շրջանակը:*

# ԱՅԺՄԵԱԿԱՆ ԵՎ ՕԳՏԱԿԱՐ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆ

**ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ** Ռուսաստանին միավորվելը բախտորոշ, պատմական խոշոր նշանակություն ունեցող իրադարձություն էր հայ ժողովրդի կյանքում: Մեկընդմիշտ ազատագրվելով շահական Պարսկաստանի ռազմաֆեոդալական դեսպոտիզմի դարավոր լծից և անցնելով Ռուսաստանի տիրապետության ներքո, հայ ժողովրդի մի մեծ հատված ո՛չ միայն փրկվեց ֆիզիկական բնաջնջման ու ձուլվելու ահավոր աղետից, կրոնական դաժան հալածանքներից, այլև կանգնեց տնտեսական ու կուլտուրական զարգացման նոր ուղու վրա: Նա հաղորդակից եղավ ռուսական առաջավոր մշակույթին, կրեց ռուսական հեղափոխական-դեմոկրատական մտքի բարերար ազդեցությունը, դարձավ լենինյան կուսակցության ղեկավարությամբ ռուսաստանյան պրոլետարիատի գլխավորած հեղափոխական պայքարի մասնակիցը և Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի շնորհիվ ձեռք բերեց իր ազգային ու սոցիալական ազատությունը:

Ահա այս կարևոր հարցին է նվիրված Զ. Տ. Գրիգորյանի նոր արժեքավոր աշխատությունը*:

Նշված պրոբլեմի ուսումնասիրության ասպարեզում զգալի աշխատանք է կատարվել թե՛ նախասովետական և թե սովետական ժամանակաշրջանի պատմագրության մեջ: Անցյալ դարի 70-ական թվականներից սկսած լույս են տեսել Ն. Դուբրովինի, Վ. Պոտտոյի, Պ. Զուբովի, Մ. Շչերբատովի, Ն. Սուխոտինի և այլոց աշխատությունները, արխիվային վավերագրերի բազմաթիվ ժողովածուներ, որոնցում հարուստ նյութ կա մասնավորապես XIX դարի առաջին երեսնամյակի ռուս-պարսկական և ռուս-թուրքական պատերազմների պատմության վերաբերյալ: Սակայն վերոհիշյալ հրատարակությունները հիմնականում գրված են ցարական պաշտոնական պատմագրության դիրքերից: Դրանցում գովերգվում են ցարիզմը, նրա նվաճողական քաղաքականությունը: Ցարիզմի ջատագով հեղինակները, սքողելով կամ անտեսելով ռուսական պետության դեպի Անդրկովկաս առաջ շարժվելու ռազմաքաղաքական ու տնտեսական նպատակները, նրա նվաճողական քաղաքականությունը ներկայացրել են որպես կրոնական ու մարդասիրական մոտիվներով թելադրված մի ակտ: Այդ միտումնությանն ավելի կամ պակաս չափով տուրք տվեց նաև անցյալի հայ պատմագրությունը:

Արևելյան Հայաստանը Ռուսաստանի կազմի մեջ մտնելու հարցը մշտապես եղել է սովետահայ պատմագրության ուշադրության կենտրոնում, սակայն այդ կարևոր իրադարձության այսօրվա ճիշտ գնահատականը մեկեն չի ձևավորվել: 1920-ականից մինչև 30-ական թվականները սովետահայ պատմագրության մեջ իշխում էր այն սխալ տեսակետը, թե իբր Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին և, առհասարակ, հայերի ռուսական կողմնորոշումը բացասական հետևանքներ է ունեցել, այն չարիք է եղել հայ ժողովրդի համար:

Այս տեսակետը հայտնել է հատկապես Լեոն իր մի շարք աշխատություններում: Այս կամ այն չափով նույն սխալ դիրքորոշումն ունեն նաև ուրիշ հեղինակներ: Հարկ է նշել, որ այն բխում էր ոչ թե հեղինակների ներքին համոզումից, այլ տուրք էր ժամանակին սովետական պատմագրության մեջ իշխող սխալ, հակագիտական կոնցեպցիային, գռեհիկ սոցիոլոգիզմին:

Սովետահայ պատմագրության մեջ 1930-ական թվականների վերջերին Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միացման հարցում առաջ եկավ «չարիքներից փոքրագույնի» տեսակետը, որը երկար չգոյատևեց: 1940-ական թվականների կեսերից պատմագիտական աշխատություններում շեշտվում էր Ռուսաստանի խաղացած դերը հայ ժողովրդի կյանքում, վեր

* *Զ. Տ. Գրիգորյան,* Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին և նրա պատմական նշանակությունը, *«Հայաստան» հրատ., 1978:*

հանվում միացման պրոգրեսիվ նշանակությունը:

Այս առումով սովետահայ պատմագրության մեջ մեծ վաստակ ունի պրոֆ. Զ. Գրիգորյանը: Մոտ չորս տասնամյակ նրա գիտական հետազոտությունների առարկան եղել և մնում է հայ-ռուսական հարաբերությունների խնդիրը, մասնավորապես, դրա ավելի բնորոշ մասը կազմող Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման պատմությունը: Նա գրել է այս պրոբլեմին նվիրված մի շարք արժեքավոր աշխատություններ, որոնք լայն ճանաչում են գտել ինչպես գիտական, նույնպես և ընթերցող լայն հասարակայնության շրջանում:

Խորապես ուսումնասիրելով նյութը, օգտագործելով սովետական պատմագրության նորագույն նվաճումները՝ Զ. Գրիգորյանը հաջողությամբ շարադրել է իր նոր, արժեքավոր մենագրությունը: Այն աչքի է ընկնում փաստական հարուստ նյութով, գաղափարայնությամբ, գիտական կուռ ընդհանրացումներով, մի շարք հանգուցային հարցերի յուրովի մեկնաբանությամբ: Աշխատությունը հեղինակի՝ տարիների գիտական հետազոտությունների հանրագումարն է: Այն բաղկացած է 3 բաժիններից: Ներածության մեջ վերլուծված է տվյալ պրոբլեմի մասին հրատարակված գրականությունը, մարքս-լենինյան դիրքերից գնահատված են առանձին աշխատություններ: Հեղինակը նշելով, որ նախահեղափոխական տարիներին լույս տեսած գրականությունը պարունակում է բավականաչափ հարուստ նյութ, արժեքավոր շատ տեղեկություններ, միաժամանակ իրավամբ քննադատում է ռուսական պաշտոնական պատմագրության առանձին ներկայացուցիչների, որոնք տասնամյակներ շարունակ զարգացրել են մեծապետական մի տեսակետ, որը երկար ժամանակ խոչընդոտում էր Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միացնելու պատմական ակտի օբյեկտիվ գնահատմանը և հայ ժողովրդի հետագա կյանքում դրա արդյունքների պատշաճ արժեքավորմանը: Հեղինակը ճիշտ է նկատել, որ աքողելով ցարիզմի ռազմաքաղաքական և գաղութատիրական շահերը Անդրկովկասում և Մերձավոր Արևելքում, նրանք Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին ներկայացրել են սոսկ որպես հայ ժողովրդի նկատմամբ ռուսական ցարերի «մարդասիրության» ու «ողորմածության» արգասիք, ազատագրական միսիայի իրականացում: Ցարական պաշտոնական պատմագրությունը կովկասյան կորպուսի ռազմական հաղթանակները վերագրելով «ռուսական գահին» ու գեներալներին, անտեսել է հայ ժողովրդական մասսաների դերն այդ գործում: Զ. Գրիգորյանը հանգամանորեն անդրադարձել է նաև նախահեղափոխական ժամանակաշրջանի հայ պատմաբանների տեսակետներին:

Գրախոսվող մենագրության առաջին բաժինն սկսվում է արևելահայության սոցիալ-տնտեսական և քաղաքական ծանր կացության նկարագրությամբ: Մի հանգամանք, որն ակնառու ցույց է տալիս շահական Պարսկաստանի համեմատությամբ ռուսական տիրապետության պրոգրեսիվությունը հայ ժողովրդի համար: Այնուհետև հեղինակն անդրադարձել է հայ և ռուս ժողովուրդների վաղեմի կապերին, հայերի ռուսական կողմնորոշման սկզբնավորմանն ու զարգացմանը. հանգամանորեն վեր է հանել հայ ազատագրական շարժման գործիչների վիթխարի ջանքերը պարսկաթուրքական լծից Ռուսաստանի օգնությամբ Հայաստանի ազատագրման հարցի լուծման ասպարեզում: Գրքում մանրամասն վերլուծված են Հայաստանի ազատագրման տարբեր ծրագրերը և ցույց է տրված, որ հայ ժողովուրդն ազատության ու անկախության համար մղած պայքարի իր հարուստ փորձով հանգեց այն հաստատ համոզման, որ պարսիկ խաների ու թուրք փաշաների կործանարար լծից կարող է ազատագրվել միայն Ռուսաստանի ռազմական օգնությամբ:

Խոսելով հայ ազատագրական շարժման ռուսական կողմնորոշման սկզբնավորման և ձևավորման սոցիալ-տնտեսական ու ռազմաքաղաքական նախադրյալների մասին՝ հեղինակը միաժամանակ քննության է առնում այդ ժամանակաշրջանի խնդիրը, որը սովետահայ պատմագրության վիճելի հարցերից է: Նրա կարծիքով, սխալվում են նրանք, ովքեր հայերի ռուսական կողմնորոշման սկզբնավորումը կապել են հայ ազատագրական շարժման ականավոր գործիչ Իսրայել Օրու հետ:

Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման պատմությանն է նվիրված գրքի երկրորդ, ամենաընդարձակ բաժինը: Այստեղ հարուստ նյութերի հիման վրա ներկայացված են ռուս-պարսկական և ռուս-թուրքական պատերազմների պատմությունը, Հայաստանի տարածքի վրա տեղի ունեցած ռազմական գործողությունները: Այնուհետև խոսվում է Թուրքմենչայի պայմանագրի մասին, որով փաստորեն ձևակերպվում է Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին:

Հայաստանի միացման հարցը քննելիս հեղինակն այն սերտորեն առնչել է Վրաստանի և Ադրբեջանի միացման հարցին, վեր հանել Անդրկովկասի երեք ժողովուրդների մղած ազատագրական համատեղ պայքարը՝ պարսկական և օսմանյան լծից ազատագրվելու համար:



Ռուսաստանի արտաքին քաղաքականությունը Մերձավոր Արևելքում, որն օբյեկտիվորեն համընկնում էր Անդրկովկասի ժողովուրդների ազատագրական ձգտումներին, դեմ էր առնում արևմտյան մեծ տերությունների, առաջին հերթին՝ Անգլիայի ու Ֆրանսիայի կատաղի դիմադրությանը: Նրանք անսքող պաշտպանում էին Պարսկաստանի բոլոր ձեռնարկումները՝ ուղղված ռուսական առաջխաղացման դեմ, Անդրկովկասում նրա ամրապնդմանը խափանելու նպատակով: Միջին և Մերձավոր Արևելքում իրենց տնտեսական ու քաղաքական ազդեցությունն ուժեղացնելու համար անգլիական ու ֆրանսիական կառավարություններն առանձին-առանձին օգնում էին Պարսկաստանին և Թուրքիային, ջանում թուլացնել Ռուսաստանի ռազմական հզորությունը և նրան հեռու պահել Անդրկովկասից: Այս ամենը հաստատելու համար մենագրության մեջ բերված են բազմաթիվ փաստեր:

Գտնելով, որ Արևելյան Հայաստանում խանական լծի տապալման համար մղված կռիվներում գլխավոր ու վճռական ուժը ռուսական բանակն էր, հեղինակը լայնորեն լուսաբանել է նաև հայերի ակտիվ մասնակցությունը ռուս-պարսկական և ռուս-թուրքական պատերազմներին, ըստ ամենայնի վեր հանել ինչպես առանձին անհատների, նույնպես և հայ կամավորական խմբերի մարտական քաջագործությունները: Ուշագրավ է, որ հեղինակն այդ ամենը դիտում է որպես հայ և ռուս ժողովուրդների ռազմական համագործակցություն և գտնում, որ այդ համագործակցությունը պատահական չէր և ոչ էլ ռուս պետական ու ռազմական գործիչների և հայ հասարակական շարժման ներկայացուցիչների սոսկ սուբյեկտիվ ցանկությունների ու նպատակների արդյունք: Այդ համագործակցությանը, իրավամբ նշում է հեղինակը, նախորդել է ավելի քան տասը դարերի մի ժամանակաշրջան, որի ընթացքում այդ երկու ժողովուրդների միջև հաստատվել և հետևողականորեն զարգացել են տնտեսական, մշակութային, քաղաքական ու ռազմական սերտ կապեր:

Գրախոսվող աշխատության մեջ ուշագրավ էջեր կան Կովկաս աքսորված դեկաբրիստների մասին, որոնք խոշոր դեր են խաղացել Արևելյան Հայաստանը պարսկական տիրապետությունից ազատագրելու գործում: Նրանք ակտիվ մասնակցել են ռուս-պարսկական և ռուս-թուրքական պատերազմներին և, որպես կանոն, կովկասյան կորպուսի հրամանատարության կողմից օգտագործվել ամենավտանգավոր ճակատներում: Հետաքրքրական փաստեր են բերվում դեկաբրիստների, ռուս մեծ գրող ու դիվանագետ Ա. Ս. Գրիբոյեդովի և հայկական, վրացական, ադրբեջանական մշակույթի ու հասարակական-քաղաքական գործիչների կապերի մասին:

Թե՛ ռուսական և թե հայկական պատմագրության մեջ հաճախ է շոշափվել ռուս-պարսկական և ռուս-թուրքական պատերազմներում դեկաբրիստների եռանդուն մասնակցության պատճառների հարցը: Նախահեղափոխական պաշտոնական պատմագրությունը Կովկաս աքսորված դեկաբրիստների բացառիկ ակտիվ մասնակցությունն այդ պատերազմներին բացատրել է նրանով, որ իբր նրանք դրանով կամեցել են «արյունով քավել իրենց մեղքերը»: Գրքում համոզիչ փաստերով հերքվում է այդ մտացածին բացատրությունը, քանի որ այն բնավ չի համապատասխանում այն վարքագծին, որ դեկաբրիստ գործիչները հանդես բերեցին ապստամբության ճնշումից հետո, դատավարության ժամանակ, ինչպես և բանտում, տաժանակրության մեջ, մահապատժի ենթարկվելիս:

Ռուս-պարսկական պատերազմի, ինչպես և Ռուսաստանին Արևելյան Հայաստանի միացման պատմության հանգամանալի շարադրանքից զատ, հեղինակն զգալի տեղ է հատկացրել նաև 1828—1829 թթ. ռուս-թուրքական պատերազմի կովկասյան ռազմաճակատին, որը, թեև ավարտվեց Ռուսաստանի հաղթանակով, բայց արևմտյան տերությունների հակառուսական քաղաքականության հետևանքով հնարավոր չեղավ Արևմտյան Հայաստանը ևս միացնել Ռուսաստանին:

Միանգամայն ճիշտ է հեղինակի այն եզրահանգումը, թե հանուն իրենց նվաճողական շահերի, մեծ տերությունները մի անգամ չէ որ արևմտահայության ճակատագիրը դրել են արյունոտ զոհասեղանին: Հիրավի, արևմտյան տերությունների վարած այդ քաղաքականության հետևանքով էր, որ չիրականացվեց Արևմտյան Հայաստանի վերամիավորումը Ռուսաստանին՝ մի իրողություն, որը և դարձավ հայ ժողովրդի արևմտահայ հատվածի ողբերգության հիմնական պատճառներից մեկը:

Մենագրության երրորդ բաժինն ամբողջովին նվիրված է Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միացման պատմական նշանակությանը: Հեղինակն այստեղ , փաստական հարուստ տվյալների հիման վրա, բացահայտում է այն վիթխարի նշանակությունը, որ հայ ժողովրդի համար ունեցավ այդ միացումը՝ անկախ ցարիզմի հետապնդած ռազմաքաղաքական և գաղութատիրական նպատակներից:

Արևելյան Հայաստանը հայ ժողովրդի ազգահավաքման օջախ. այսպես է վերնագրված այդ բաժնի առաջին գլուխը: Այստեղ մանրա-

մասն խոսվում է Պարսկաստանից և Թուրքիայից հայերի զանգվածային գաղթի մասին դեպի Արևելյան Հայաստան, որը, իրոք, նշանակալի քայլ հանդիսացավ հայ ժողովրդի ազգահավաքման գործում:

Աշխատության այս բաժնում հեղինակը ցույց է տվել Արևելյան Հայաստանի տնտեսական կյանքի՝ գյուղատնտեսության, արդյունաբերության և առևտրի աննախընթաց զարգացումը, միաժամանակ իրավամբ մատնանշելով, որ Արևելյան Հայաստանի էկոնոմիկան շատ ավելի արագ ու համակողմանի կզարգանար, եթե ցարիզմն իր ազգային քաղաքականությամբ չկաշկանդեր նրա առաջընթացը:

Կրթության, գիտության, պարբերական մամուլի, գրականության և արվեստի բնագավառներում տեղի ունեցած վերելքն արտացոլող խոսուն փաստերով գրքում ցույց է տրված նաև, որ Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին նպաստավոր պայմաններ ստեղծեց հայ բազմադարյան մշակույթի հետագա զարգացման համար: Այն միաժամանակ առավել նպաստավոր պայմաններ ապահովեց հայ և ռուս ժողովուրդների հոգևոր կյանքի մերձեցման, նրանց ստեղծագործական համագործակցության համար: Հայ մշակույթի զարգացման վրա իր բարերար ազդեցությունը գործեց ռուսական առաջավոր մշակույթը: Աշխատության վերջում հեղինակն անդրադառնում է արևելահայ հասարակական-քաղաքական մտքի զարգացմանը, ներկայացնում սոցիալ-տնտեսական ու քաղաքական ակնբախ տեղաշարժերը: Հոկտեմբերյան հեղափոխությունը նոր դարաշրջանի սկիզբը հանդիսացավ նաև հայ ժողովրդի համար: Արևելյան Հայաստանի տարածքի վրա էր, որ 1920 թ. նոյեմբերի 29-ին ծածանվեց մեծ Հոկտեմբերի դրոշը:

Պրոֆեսոր Զ. Գրիգորյանի այս արժեքավոր մենագրության մեջ կան որոշ վիճելի դրույթներ: Օրինակ, նա գտնում է, որ հայ ազատագրական շարժման ռուսական կողմնորոշումը իր ձևավորմանն է հասել XVII դարի երրորդ քառորդում (էջ 86): Զ. Գրիգորյանի (և այլ հեղինակների) կարծիքով, XIX դարի 50—60-ական թվականներին արևելահայ իրականության մեջ գոյություն են ունեցել հասարակական-քաղաքական չորս հոսանքներ՝ կղերապահպանողական, ազգային-պահպանողական, լիբերալ-բուրժուական և հեղափոխական-դեմոկրատական (էջ 381): Բայց չէ՞ որ հասարակական-քաղաքական յուրաքանչյուր հոսանք արտահայտում և պաշտպանում է որևէ դասակարգի շահերը, իսկ արևելահայ իրականության մեջ (ինչպես և ողջ Ռուսաստանում) այն ժամանակ կային երեք դասակարգեր, հետևաբար, գոյություն են ունեցել ոչ թե չորս, այլ երեք հոսանքներ՝ կղերաֆեոդալական, լիբերալ-բուրժուական և հեղափոխական-դեմոկրատական:

Չնայած վերոբերյալին, հրապարակված է ուշագրավ մի աշխատություն, ուր պատշաճ գիտականությամբ շարադրված է Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միացման պատմությունը և վեր է հանված դրա պատմական նշանակությունը: Զ. Տ. Գրիգորյանի աշխատությունն արժեքավոր ավանդ է սովետահայ պատմագրության մեջ:

**Շ. Ռ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
Պատմական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր



Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 01640 Պատվեր 334 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ՝ 16.700 Գինը՝ 20 կոպ.:*
*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 5/III-1979 թ.*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:*

# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու: *Հ. 17: «Հայաստան» հրատ., 1978:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու: *Հ. 18: «Հայաստան» հրատ., 1978:*

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Խոպան: *«Հայաստան» հրատ., 1978:*

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Մալայա զեմլյա: Վերածնունդ: *«Հայաստան» հրատ., 1978:*

Զարգացած սոցիալիզմի Սահմանադրությունը: *«Հայաստան» հրատ., 1978:*

Բ. ԿՆՈՒՆՅԱՆՑ— Ընտիր երկեր: *«Հայաստան» հրատ., 1978:*

Մ. ԲՈՐՅԱՆ— Անդրկովկասի բոլշևիկյան մամուլը սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար մղված պայքարում *(1917—1921 թթ.): ԵՊՀ հրատ., 1978:*

ՀՈՎՀ. ԻՆՃԻԿՅԱՆ— Եվ հեղափոխությունը դառնեց *(Բ. Կնունյանց, 1878—1978): «Հայաստան» հրատ., 1978:*

Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— Սոցիալիստական և բուրժուական ապրելակերպեր: *Ե., ԳԱ հրատ., 1978:*

Հ. ԹՈՓՈՒԶՅԱՆ— Եգիպտոսի հայ գաղութի պատմություն *(1805—1925 թթ.): Ե., ԳԱ հրատ., 1978:*

Մ. ԱԴՈՆՑ— Միջտնտեսային կոոպերացիան և ագրոարդյունաբերական ինտեգրացիան: *«Հայաստան» հրատ., 1978:*

Հ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ, Գ. ԴԵՎՐԻԿՅԱՆ— Ճակատագրի ճանապարհներ: *«Հայաստան» հրատ., 1978:*

Ա. ԱՅՎԱԶՅԱՆ— Նախիջևանի պատմաճարտարապետական հուշարձանները: *«Հայաստան» հրատ., 1978:*

**Возрастание руководящей роли марксистско-ленинских партий в условиях строительста развитого социализма и коммунизма.** Материалы международной научной конференции. Москва 7—9 июня 1978г. М., Политиздат. 1978.

**XXV съезд КПСС о возрастании руководящей роли партии в коммунистическом строительстве.** Сборник. Издательство Московского университета. 1978.

**Московская конференция министров иностранных дел СССР, США и Великобритании** (19—30 октября 1943 г.). Сборник документов. Т. I. М., Политиздат. 1978.

**Развитой социализм.** М., Политиздат. 1978.

**Основы коммунистической пропаганды.** М., Политиздат. 1978.

Д. КУНАЕВ. — **Избранные речи и статьи.** М., Политиздат. 1978.

Л. КОРВАЛАН — **Нас ждут новые битвы.** Избраные статьи и речи. М., Политиздат. 1978.

В. ПЕССИ — **Избранные статьи и речи.** Перевод с фанского. М., Политиздат. 1978.

Ю. ЖУКОВ. — Общество без будущего. Записки публициста. М., Политиздат. 1978.

Е. НОЖИН — **Мастерство устного выступления.** М., Политиздат. 1978.

З. КАРИМОВ — **Планирование партийной работы.** М., Политиздат. 1978.

Ю. ШВЫРКОВ — **Социалистическое планирование и капиталистическое программирование.** М., «Экономика». 1978.

В. ДЮКОВ. С. МОГИЛАТ — **Доверие и контроль.** М., Политиздат. 1978.

**Пятилетние планы коммунистического строительства,** М., «Экономика». 1978.

**Договор в торговле и качество товара.** М., «Экономика». 1978.

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԷԿՈԼՈԳԻԱԿԱՆ ՔԱՐՏԵԶ

*Էկոլոգներն օգնեցին Խարկովի ճարտարապետներին՝ ընտրելու առավել հարմար տեղ հարյուր հազարանոց բնակելի նոր զանգվածի կառուցման համար։ Նրանք կազմեցին կառուցապատման ենթակա հողի ռացիոնալ օգտագործման քարտեզ։ Քաղաքաշինության բնագավառում նման քարտեզներ ստեղծվում են առաջին անգամ։ Դրանք նախագծողներին հնարավորություն են ընձեռում՝ գտնելու պիտանի տարածք, բացառելով գյուղատնտեսական հանդակները, անտառատնկումները, գետափներն ու բնության էկոլոգիապես արժեքավոր այլ օրյեկտներ։*

## ՈՒՆԻՎԵՐՍԱԼ—ԷՀՄ

*Հայրենական ԷՀՄ-երի ընտանիքը համալրվեց փոքրաչափ էլեկտրոնային հաշվիչ մեքենայով, որը հարմարեցվում է պատվիրատուի խնդիրներին՝ ի հաշիվ մեքենայի կառուցվածքի դինամիկ վերակառուցման։ Այն դյուրացնում է ծրագրողների գործը։ Նոր ԷՀՄ-ն ստեղծվել է Թբիլիսիի «Էլվա» գիտաարտադրական միավորման մասնագետների և ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի կառավարման պրոբլեմների ինստիտուտի գիտնականների համատեղ ջանքերով։ Այն հսկում և կառավարում է տեխնոլոգիական պրոցեսները, վերլուծում բարդ օպերացիաները։*

## ԴԱՏԱ՞ՐԿ Է...

*Ներկայումս հույժ կարևոր է ատոմային էլեկտրակայանների բիոլոգիական պաշտպանությունը։ Կայանի պաշտպանությունն «ստեղծվում է» բետոնե միջուկներից՝ երեսպատված 3—8 մմ հաստությամբ պողպատե թիթեղներով։ Բետոնի և պողպատի միջև հնարավոր դատարկությունը վտանգավոր է ճառագայթման առումով։ Ուստի, նման համակցված կառույցի հուսալիությունը որոշելու համար, հարկ է գտնել այդ դատարկությունը հայտաբերող միջոց։ «РИП—1» սարքը կարող է ո՛չ միայն բացահայտել այդպիսի «խոռոչները», այլև որոշել դրանց չափերն ու խորությունը 10—100 մմ ծավալում։ Այն սպասարկում է մեկ օպերատոր։ Հայտնաբերված վնասված գոտին վերացվում է՝ պողպատե պատին ներարկելով ցեմենտի խառնուրդ, որի շնորհիվ նվազում են վերանորոգման աշխատանքների ծավալն ու ինքնարժեքը։ Սարքը, որ նախագծել են «Օրգնէներգոստրոյ» ինստիտուտը, կարելի է օգտագործել ցանկացած շինարարության մեջ տարբեր բետոնեկոնստրուկցիաների թերությունների վերացման համար, մանավանդ որ այն սպասարկող անձնակազմի համար անվտանգ է։*

## ՄԻՆՉԵՎ ՆՈՐ ԲԵՐՔԸ

*Մոսկվացի գիտնականները Օդեսայի մասնագետների հետ մեկտեղ մշակել են նախնական սառեցման շարժական կայան, որը հնարավորություն է ընձեռում բանջարեղենի ու մրգերի հավաքից անմիջապես հետո ապահովելու դրանց պահպանման ջերմաստիճանային լավագույն ռեժիմ։ Դաշտում կամ այգում պտղի սառեցման միջոցով մի քանի անգամ ավելանում է դրանց պահպանման ժամկետը։*

*Մի այլ մեթոդ են առաջարկել Կիևի առևտրատնտեսագիտական ինստիտուտի գիտնականները։ Օսլայից նրանք պատրաստել են ուտելի և բոլորովին անվնաս փոշի, որով փոշոտված խնձորը կարելի է պահել մի քանի տարի։*

## ԿԱՐԵԼԻ Է ԽՓԵԼ ԵՎ ԵՐԿՈՒ ՆԱՊԱՍՏԱԿ

*Ֆլորիդա նահանգում պատրաստել են քաղաքային աղբից և կոյուղու կեղտաջրերից ստացվող մեթանի մշակման փորձնական սարքավորում։ Աղբը մանրացվում է, զտվում և ապա խառնվում հոսքի օրգանական մասին՝ նստվածքին։ Խառնուրդը մղվում է հերմետիկ բաքերը, որտեղ տաքացվում է մինչև 60° C։ Այնուհետև ավելացվում են հանքանյութեր և մանրէներ։ Մանրէների քայքայումից ստացվում է մեթան՝ բնակելի տների ջեռուցման համար։ Հազար տոննա խառնուրդը կարող է տալ այնքան գազ, որը կտաքացնի 10.000 բնակարան։ Մնացած մասը կարելի է օգտագործել որպես պարարտանյութ ջերմոցների համար։*